# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1980 թվականի հունիսի 23-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը։

Պլենումը լսեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ զեկուցումը և որոշեց ՍՄԿԿ հերթական՝ XXVI համագումարի հրավիրման հարցը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը լսեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր ընկ. Ա. Ա. ԳՐՈՄԻԿՈՅԻ զեկուցումը «Միջազգային դրության և Սովետական Միության արտաքին քաղաքականության մասին»։

Ընկ. ընկ. Լ. Ի. Բրեժնևի և Ա. Ա. Գրոմիկոյի զեկուցումների շուրջը մտքերի փոխանակությանը մասնակցեցին Ուկրաինական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ա. Ֆ. ՎԱՏՉԵՆԿՈՆ, Վրաստանի կոմկուսի
Կենտկոմի առաջին քարտուղար Է. Ա. ՇԵՎԱՐԴՆԱՁԵՆ, ՍՄԿԿ Մոսկվայի
քաղկոմի երկրորդ քարտուղար Վ. Ն. ՄԱԿԵԵՎԸ, ՍՄԿԿ Լենինգրադի քաղ-
կոմի առաջին քարտուղար ՅՈՒ. Ֆ. ՍՈԼՈՎՅՈՎԸ, «Լիտերատուրնայա գա-
զետայի» գլխավոր խմբագիր, ՍՍՀՄ գրողների միության վարչության քար-
տուղար Ա. Բ. ՉԱԿՈՎՍԿԻՆ, Դոնեցկի մարզի Ժդանով քաղաքի Ս. Օրջոնի-
կիձեի անվան «Ազովստալ» մետալուրգիական գործարանի պողպատ ձուլող
Գ. ՅԱ. ԳՈՐԲԱՆԸ, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար
Կ. Գ. ՎԱՅՆՈՆ, Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար
Ի. Ի. ԲՈԴՅՈՒԼԸ։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ընկ. Ա. Ա. Գրոմիկոյի զեկուցման առթիվ ընդունեց համապատասխան որոշում։

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը։

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1980 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍԻ 23-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

# ՍՄԿԿ ՀԵՐԹԱԿԱՆ՝ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ ՄԱՍԻՆ

1. Սովետական Միության կոմունիստական կուսակցության հերթական՝
XXVI համագումարը հրավիրել 1981 թվականի փետրվարի 23-ին:
2. Հաստատել համագումարի հետևյալ օրակարգը.
1) ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության
հերթական խնդիրները ներքին և արտաքին քաղաքականության բնագավա-
ռում: Զեկուցող՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնև:
2) ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:
Զեկուցող՝ ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ.
Գ. Ֆ. Սիզով:
3) ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվա-
կանների հիմնական ուղղությունները: Զեկուցող՝ ՍՍՀՄ Մինիստրների խոր-
հրդի նախագահ ընկ. Ա. Ն. Կոսիգին:
4) Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ:
3. ՍՄԿԿ XXVI համագումարի ներկայացուցչության նորման սահմանել՝
մեկ պատգամավոր կուսակցության 3.250 անդամից:
4. ՍՄԿԿ XXVI համագումարի պատգամավորները, կուսակցության կա-
նոնադրության համաձայն, ընտրվում են փակ (գաղտնի) քվեարկությամբ
մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսներում և միութենական
հանրապետությունների կոմկուսների համագումարներում: Ուկրաինայի, Բե-
լոռուսիայի, Ուզբեկստանի և Ղազախստանի կոմկուսներից ՍՄԿԿ XXVI հա-
մագումարի պատգամավորների ընտրությունները անցկացվում են մարզային
կուսակցական կոնֆերանսներում:
Սովետական բանակի, ռազմածովային նավատորմի, ներքին և սահմա-
նապահ զորքերի կուսակցական կազմակերպություններում գտնվող կոմու-
նիստները ՍՄԿԿ XXVI համագումարի պատգամավորներ են ընտրում համա-
պատասխան տերիտորիալ կուսակցական կազմակերպությունների հետ հա-
մատեղ՝ մարզային, երկրամասային կուսկոնֆերանսներում կամ միութենա-
կան հանրապետությունների կոմկուսների համագումարներում:
Սովետական բանակի և ռազմածովային նավատորմի՝ արտասահմանում
գտնվող զորամասերի կուսակցական կազմակերպությունների կոմունիստները
ՍՄԿԿ XXVI համագումարի պատգամավորներ են ընտրում համապատասխան
զորամիավորումների կուսակցական կոնֆերանսներում:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՁԵԿՈՒՑՈՒՄԸ

Ընկերնե՜ր:
Եկող տարի հերթական համագումար անցկացնելու՝ կուսակցության
կանոնադրությամբ սահմանված ժամկետն է: Այդ կապակցությամբ ՍՄԿԿ
Կենտկոմի քաղբյուրոն առաջարկ է ներկայացնում Սովետական Միու-
թյան կոմունիստական կուսակցության քսանվեցերորդ համագումարը հրավի-
րել 1981 թվականի փետրվարի 23-ին:
Ամեն մի համագումար նոր հորիզոններ է բացել մեր կուսակցության և
երկրի առջև: Վստահ եմ, որ այդպիսին կլինի նաև առաջիկա համագումարը,
որը կոչված է որոշելու պայքարի ստրատեգիան ու տակտիկան կոմունիստա-
կան շինարարության ակտիվ փուլում:
Երկրի զարգացմանը զուգընթաց աճում են ներքին քաղաքականության
խնդիրների բարդությունն ու մասշտաբները: Մեծ ջանքեր է պահանջում
միջազգային իրադրության առողջացմանն ուղղված յուրաքանչյուր առաջըն-
թաց քայլը: Ագրեսիվ իմպերիալիստական շրջանները փորձում են ճնշում
գործադրել Սովետական Միության, ամբողջ սոցիալիզմի դիրքերի վրա:
Նրանք ձգտում են հասնել անգամ Սովետական Միության մեկուսացման:
Բայց այդ ուղղությամբ նրանց գործողությունները իսկույն ևեթ սկսեցին ձա-
խողվել:
Դա վճռական չափով կապված է այն բանի հետ, որ անսահման աճել են
սովետական երկրի տնտեսական պոտենցիալը և պաշտպանական հզորու-
թյունը, է՛լ ավելի է ամրացել մեր հասարակության սոցիալ-քաղաքական և
գաղափարական միասնությունը (Ծափահարություններ): Հսկայական դեր
խաղաց նաև այն, որ մենք ցուցաբերեցինք տոկունություն ու հետևողականու-
թյուն, թույլ չտվեցինք, որ մեզ շեղեն ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների
սահմանած կուրսից:
Մեր կուրսը ձևավորվել, դրա ճշտությունը ստուգվել է պրակտիկայում:
Այն իր դրական արդյունքներն է ունեցել ինչպես ներքին, այնպես էլ արտաքին
քաղաքականության բնագավառում: Դրա հետ մեկտեղ կյանքը մեր առջև
դնում է նոր խնդիրներ, որոնց լուծման ուղիներն էլ մենք պետք է որոշենք
համագումարում:
Ստեղծված ավանդույթներին համապատասխան , առաջարկվում է հա-
մագումարի հետևյալ օրակարգը.
1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության

ներթական խնդիրները ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հանձնարարում է զեկուցող հաստատել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Բրեժնևին: **(Երկարատև ծափահարություններ):**

2. ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը: Զեկուցող՝ ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ Գ. Ֆ. Սիզով:

3. ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների հիմնական ուղղությունները: Զեկուցող՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ա. Ն. Կոսիգին:

4. Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ:

Ինչ վերաբերում է ներկայացուցչության նորմաներին, ապա առաջարկվում է XXVI համագումարին մասնակցելու համար առաջադրել մեկ պատգամավոր կուսակցության երեք հազար երեք հարյուր հիսուն անդամից:

Այսպիսով, յուրաքանչյուր պատգամավոր կներկայացնի կոմունիստների փոքր-ինչ ավելի մեծ ջոկատ, քան XXV համագումարում: Դա պայմանավորված է մեր կուսակցության թվական կազմի աճով: Առ 1-ը ապրիլի կուսակցության շարքերում կար 17 միլիոն 193 հազար 376 մարդ:

Կանոնադրությանը համապատասխան, XXVI համագումարի պատգամավորները գաղտնի քվեարկությամբ կընտրվեն մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսներում և միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների համագումարներում:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն նպատակահարմար է գտնում Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի և Ղազախստանի կոմունիստական կուսակցություններից, այսինքն՝ կոմունիստների ավելի մեծ թիվ ունեցող կազմակերպություններից պատգամավորներ ընտրել մարզային կուսակցական կոնֆերանսներում:

Մի խոսքով, հարկ չկա փոխելու համագումարի պատգամավորների ընտրությունների ստեղծված կարգը:

Հիմա հաշվետու-ընտրական կամպանիայի ժամկետների մասին: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հնարավոր կհամարեր՝

— սկզբնական կուսակցական կազմակերպություններում ժողովները անցկացնել այս տարվա սեպտեմբեր-նոյեմբերին.

— շրջանային, քաղաքային, օկրուգային կուսակցական կոնֆերանսները անցկացնել այս նույն տարվա նոյեմբեր-դեկտեմբերին.

— մարզային և երկրամասային կուսակցական կոնֆերանսները՝ 1980 թվականի դեկտեմբերին—1981 թվականի հունվարին.

— միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարները՝ 1981 թվականի հունվարին-փետրվարի սկզբին:

Համագումարին նախորդող հաշվետու-ընտրական կամպանիան առանձնահատուկ ժամանակաշրջան է կուսակցության կյանքում, վերին աստիճանի պատասխանատու ժամանակաշրջան:

Անցած տարիներին մենք կուտակել ենք կոմունիստական շինարարության արժեքավոր փորձ: Մենք պետք է հոգածությամբ մոտենանք այն ողջ դրականին, ինչ կա մեր աշխատանքում,— լինի դա քաղաքում, թե գյուղում:

Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է քննադատաբար վերաբերվել այն վրիպումներին, թերություններին, որոնք, ցավոք, կան թե՛ տնտեսավարման պրակտիկայում, թե՛ նաև կուսակցական աշխատանքում: Մենք այդ մասին խոսել ենք Կենտրոնական կոմիտեի պլենումներում: Բայց հաշվետու-ընտրական կամպանիան մեզ պարտավորեցնում է դարձյալ ու դարձյալ համակողմանի վերլուծել կուսակցության XXV համագումարի որոշումների կատարման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների աշխատանքը: Նոր համագումարի նախապատրաստությունը ինչպես կոմունիստների, այնպես էլ անկու-



սակցականների քաղաքական և աշխատանքային ակտիվության վերելքի հզոր լծակ է:

Կարծում եմ, որ կուսակցական ժողովներում և կոնֆերանսներում պատշաճ ուշադրություն կնվիրվի կուսակցական աշխատանքի բոլոր կողմերին— քաղաքական, կազմակերպական, գաղափարախոսական:

Առավելագույն եռանդ— և սա արժե շեշտել— պետք է գործադրել տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարվա պլանը հաջողությամբ կատարելու և գերակատարելու, գործարկվելիք օբյեկտները ժամանակին շահագործման հանձնելու, 1981 թվականին՝ տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում, ժողովրդական տնտեսության կայուն աշխատանքն ապահովելու համար: Այստեղ, իհարկե, իր դերը պետք է խաղա համագումարի պատվին ծավալվող սոցիալիստական մրցությունը:

Ես առիթ եմ ունեցել Կենտկոմին ուղղած գրություններում, իսկ դրանց ծանոթ են պլենումի մասնակիցները, արծարծել մեր էկոնոմիկայի զարգացման մի քանի հանգուցային հարցեր: Ուշադրություն էր հրավիրվում մասնավորապես վառելիքաէներգետիկ և տրանսպորտային պրոբլեմներին, գյուղտեխնիկայի օգտագործմանը, սարքավորումների ներմուծմանը: Գիտեմ, որ այս կապակցությամբ զգալի աշխատանք կատարվում է: Բայց ավելի շատ պետք է արվի:

Մենք մեր առջև դրել ենք այնպիսի հիմնական խնդիր, ինչպիսին է արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը: Դա միշտ պետք է գտնվի մեր տեսադաշտում: Անհրաժեշտ է այսուհետ ևս խորհել, թե ինչպես արագացնենք գիտատեխնիկական առաջընթացը, ամրապնդենք աշխատանքային ու պետական կարգապահությունը, ապահովենք աշխատանքի արտադրողականության հուսալի աճը:

Անկասկած, հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում քննության կառնվի նաև կուսակցության միջազգային գործունեությունը: Սովետական ժողովուրդը լիովին հավանություն է տալիս ՍՄԿԿ-ի և սովետական պետության սկզբունքային խաղաղասիրական կուրսին, մեր հայրենիքի պաշտպանության և նրա անվտանգության ապահովման միջոցառումներին: **(Ծափահարություններ):** Մենք այսուհետ ևս ուժ չենք խնայի պահպանելու լարվածության թուլացումը, այն ողջ լավը, ինչ մեզ տվեցին 70-ական թվականները, ապահովելու շրջադարձ դեպի զինաթափում, պաշտպանելու ազատ և անկախ զարգացման ժողովուրդների իրավունքը, պահպանելու և ամրապնդելու խաղաղությունը: **(Երկարատև ծափահարություններ):**

Այս խնդիրների լուծումը հեշտ ու հասարակ չի լինի: Իմպերիալիզմը բացահայտորեն նպատակ է դրել փորձության ենթարկել ժողովուրդների խաղաղության կամքը, մեր և ձեր, ընկերնե՛ր, բարի կամքն ու վճռականությունը՝ ընթանալու լարվածության թուլացման և բարիդրացիության ճանապարհով:

Չկա մի օր, որ Վաշինգտոնը չփորձի վերածնել «սառը» պատերազմի ոգին, բորբոքել ռազմատենչ կրքերը: Դրա համար օգտագործվում է եղած թե չեղած ամեն մի առիթ:

Դրա օրինակը Աֆղանստանն է: ԱՄՆ-ի կառավարող շրջանները, ինչպես նաև Չինաստանը, կանգ չէին առնում ոչնչի առջև, այդ թվում նաև զինված ագրեսիայի առջև, որպեսզի խանգարեին աֆղաններին իրենց նոր կյանքը կառուցելու 1978 թվականի ապրիլի ազատագրական հեղափոխության իդեալներին համապատասխան: Իսկ երբ մենք, Աֆղանստանի կառավարության խնդրանքով, օգնեցինք մեր հարևանին՝ հակահարված տալու ագրեսիային, ետ մղելու բանդիտական միավորումների, առաջին հերթին Պակիստանի տերիտորիայից գործող միավորումների, գրոհները, ապա Վաշինգտոնը և Պեկինը չլսված աղմուկ բարձրացրին: Ինչո՛ւմ ասես չէին մեղադրում Սովետական Միությանը՝ թե՛ դեպի տաք ծովերը ճեղքել-դուրս գալու ձգտման մեջ, թե՛ ուրիշի նավթը ձեռք գցելու մտադրության մեջ, և այլն: Մինչդեռ ողջ բանն այն է, որ խորտակվեցին Աֆղանստանը իմպերիալիստական քաղաքականու-

թյան ուղեծրի մեջ ներքաշելու և հարավից մեր երկրին սպառնալիք ստեղծելու պլանները:

Աֆղանստանին օգնություն ցույց տալու սովետական ակցիայում շահադիտության նշույլ իսկ չկա: Մենք այլ ընտրություն չունեինք, բացի զորքեր ուղարկելուց: Եվ իրադարձությունները հաստատեցին, որ դա միակ ճիշտ որոշումն էր: **(Երկարատև ծափահարություններ):**

Հիմա կյանքը Աֆղանստանում հետզհետե նորմալ հունի մեջ է մտնում: Հակահեղափոխականների խոշոր հրոսակախմբերը ջախջախված են: Ինտերվենտները լուրջ պարտություն կրեցին: Այս պայմաններում մենք որոշում ընդունեցինք դուրս բերել Աֆղանստանում եղած մեր զինվորական կոնտինգենտի որոշ զորամասեր: Մենք այդ անում ենք՝ համաձայնեցնելով աֆղանական կառավարության և նրա ղեկավար ընկեր Բաբրակ Քարմալի հետ: Իհարկե, մենք այսուհետ ևս կօգնենք Աֆղանստանին՝ կառուցելու նոր կյանք, պահպանելու Ապրիլյան հեղափոխության նվաճումները: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր:

Խաղաղությունն անանց արժեք է մարդկության համար: Խաղաղության և ժողովուրդների համագործակցության դրոշը բարձրացրեց Վ. Ի. Լենինը: Այդ դրոշին մենք հավատարիմ կլինենք: **(Երկարատև ծափահարություններ):**

Վերջում կուզենայի հաստատ վստահություն հայտնել, որ ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստությունը վերստին կցուցադրի կուսակցական շարքերի համախմբվածությունը, կուսակցության և ժողովրդի անհողդողդ միասնությունը կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1980 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍԻ 23-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր ընկ. Ա. Ա. Գրոմիկոյի զեկուցման առթիվ քննության առնելով «Միջազգային դրության և Սովետական Միության արտաքին քաղաքականության մասին» հարցը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը ամբողջովին ու լիովին հավանություն է տալիս ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը կուսակցության XXIV—XXV համագումարների լենինյան արտաքին քաղաքական կուրսի իրականացման մարզում:*

*Կենտկոմի պլենումը նշում է, որ ամենից առաջ Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության, սոցիալիզմի երկրների տնտեսական և պաշտպանական հզորության աճի վրա հենվող բազմակողմանի և ակտիվ գործունեության շնորհիվ 70-ական թվականներին ձեռք բերվեց միջազգային իրադրության առողջացում: Լարվածության թուլացման պրոցեսում ամրապնդվեց և սկսեց տնտեսական ու քաղաքական կոնկրետ բովանդակությամբ հարստանալ տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, նշմարվեց «սառը պատերազմի» բացահայտ անկում, ավելի նպաստավոր օբյեկտիվ նախադրյալներ ստեղծվեցին վիճելի հարցերը և միջազգային կոնֆլիկտները արդարացի խաղաղ կարգավորման միջոցով լուծելու համար:*

*Սակայն վերջին ժամանակներս այդ դրական պրոցեսներին ագրեսիվ իմպերիալիստական շրջանները հակադրել են մի քաղաքականություն, որը թելադրվում է այն բանով, որ նրանք չեն կամենում հաշվի նստել արդի աշխարհի իրողությունների՝ սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, ազգային-ազատագրական շարժման հաջողությունների, ողջ ազատասեր դեմոկրատական ուժերի աճի հետ: Իմպերիալիզմը կուզենար արգելակել աշխարհի նորացման օբյեկտիվ պրոցեսը: ՆԱՏՕ-ի ռազմական բլոկի և ամենից առաջ ԱՄՆ-ի ղեկավարներն ընտրել են այնպիսի կուրս, որի նպատակն է խախտել աշխարհում ստեղծված ռազմական հավասարակշռությունը հօգուտ իրենց և ի վնաս Սովետական Միության, սոցիալիստական երկրների, ի վնաս միջազգային լարվածության թուլացման և ժողովուրդների անվտանգության:*

*Այստեղից էլ սպառազինությունների մրցավազքն ուժգնացնելու, սոցիալիստական և մյուս անկախ պետությունների դեմ պրովոկացիաներ սանձազերծելու իմպերիալիզմի գիծը, ՆԱՏՕ-ի ռազմատենչ ակտիվությունը և նրա՝ որպես իմպերիալիստական թելադրանքի գործիքի, ֆունկցիաների ընդլայնումը: Փորձելով իրենց կամքը պարտադրել մյուս պետություններին՝ ԱՄՆ-ի կառավարող շրջանները կանգնեցին տնտեսական «սանկցիաների» և գիտատեխնիկական, մշակութային ու սպորտային կապերի սահմանափակման ուղու վրա, հրաժարվում են իրենց ստանձնած պարտավորություններից, խախտում են իրենց*

ստորագրած համաձայնագրերը և պայմանավորվածությունները։ Հակասովետիզմը և հակակոմունիզմը վերածվել են սպառազինությունների մրցավազքի ուժգնացման գործիքի, ոչ միայն ՍՍՀՄ-ի և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների դեմ, ոչ միայն կոմունիստների դեմ, այլև պատերազմի բոլոր հակառակորդների, խաղաղասեր ուժերի դեմ մղվող պայքարի գործիքի, լարվածության թուլացման խարխլման միջոցի։

Խաղաղության գործին թշնամի հակասովետիզմի հիման վրա տեղի է ունենում Արևմուտքի, առաջին հերթին՝ Միացյալ Նահանգների ագրեսիվ շրջանների մերձեցումը չինական ղեկավարությանը։ Իմպերիալիզմի և պեկինյան հեգեմոնիզմի պարտնյորությունը նոր վտանգավոր երևույթ է համաշխարհային քաղաքականության մեջ, վտանգավոր՝ ամբողջ մարդկության, այդ թվում ամերիկյան և չին ժողովուրդների համար։

Այս բարդ միջազգային իրադրության մեջ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, սովետական պետությունը հանդես են բերում իրոք լենինյան տոկունություն, հաստատակամություն և սկզբունքայնություն, պաշտպանելով ու կենսագործելով խաղաղության պահպանման, սովետական ժողովրդի անվտանգության, ամբողջ միջազգային անվտանգության ապահովման կուրսը, չենթարկվելով պրովոկացիաների և միաժամանակ հակահարված տալով իմպերիալիստական հավակնություններին։

ՍՄԿԿ Կենտկոմը այն համոզմունքն է հայտնում, որ գոյություն ունեն օբյեկտիվ հնարավորություններ և հասարակական-քաղաքական ուժեր, որոնք կարող են թույլ չտալ սահել դեպի նոր «սառը պատերազմ», ապահովել տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների նորմալ, խաղաղ գոյակցությունը, կանխել համաշխարհային ջերմամիջուկային կոնֆլիկտի սպառնալիքը։ Այդ խնդրի լուծման ուղին բանակցությունների ուղին է՝ հիմնված հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքի խստիվ կիրառման վրա։ Դա լիովին վերաբերում է նաև սովետա-ամերիկյան հարաբերություններին։

Նման տեսակետը կողմնակիցներ է նվաճում ինչպես Արևմուտքի երկրների, այնպես էլ չմիանալու շարժման մասնակից երկրների պետական գործիչների շրջանում։ Լարվածության թուլացումը խոր արմատներ է գցել արդի միջազգային կյանքում, և ռեալ նախադրյալներ կան այն որպես համաշխարհային քաղաքականության գերիշխող միտում պահպանելու համար։

Լարվածության թուլացումը վերջին տասնամյակներում համաշխարհային ասպարեզում հաստատված ուժերի հարաբերակցության օրինաչափ արդյունքն է։ Սոցիալիզմի աշխարհի և կապիտալիզմի աշխարհի միջև ձեռք բերված ռազմաստրատեգիական հավասարակշռությունը սկզբունքային, պատմական նշանակություն ունեցող նվաճում է։ Դա իմպերիալիզմի ագրեսիվ նկրտումները զսպող գործոն է, որը համապատասխանում է բոլոր ժողովուրդների արմատական շահերին։ Այդ հավասարակշռությունը սասանելու հաշվարկները դատապարտված են ձախողման։

Պլենումը Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարում է նաև ներկա իրավիճակում, երբ ԱՄՆ-ի և նրա աջակիցների արկածախնդրական գործողությունների պատճառով ուժեղացել է ռազմական վտանգը, անշեղորեն շարունակել սոցիալիստական պետությունների եղբայրական դաշինքն ըստ ամենայնի ամրապնդելու, ժողովուրդների ազատության և անկախության արդար պայքարին աջակցություն ցույց տալու, խաղաղ գոյակցության, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու, միջազգային լարվածության թուլացումը պահպանելու և զարգացնելու, տնտեսական, գիտական և մշակութային բնագավառներում փոխշահավետ համագործակցության ՍՄԿԿ XXIV—XXV համագումարների կուրսը։

Միաժամանակ պլենումը գտնում է, որ իմպերիալիզմի և խաղաղության մյուս թշնամիների դավերը պահանջում են մշտական զգոնություն և մեր պետության պաշտպանունակության ըստ ամենայնի ամրապնդում՝ այն հաշվով, որ վիժեցվեն ռազմական գերազանցության հասնելու և համաշխարհային թելադրանք իրագործելու իմպերիալիզմի պլանները։



Կարևորագույն իրադարձություն եղավ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի ս. թ. մայիսին Վարշավայում տեղի ունեցած խորհրդակցությունը, որը կրկին ցուցադրեց սոցիալիզմի բարերար դերը համաշխարհային գործերում, նրա հետևողական ինտերնացիոնալիզմը և անսասան խաղաղասիրությունը, մի անգամ ևս ամբողջ ուժով ընդգծեց ընդհանուր խաղաղության պահպանման և միջազգային անվտանգության ապահովման համար սոցիալիստական երկրների եղբայրական համերաշխության և նրանց գործողությունների կոորդինացման նշանակությունը։ Խորհրդակցությունում ընդունված դեկլարացիայում և ամենաբարձր մակարդակով պետությունների խորհրդակցություն հրավիրելու մասին հայտարարության մեջ տրված է ստեղծված իրադրության մարքս-լենինյան վերլուծությունը, դրանք պարունակում են լարվածության օջախները վերացնելու և միջազգային զարգացման մեջ բոլոր ժողովուրդների համար վտանգավոր միտումներին վերջ դնելու համար անհրաժեշտ միջոցառումների կոնկրետ և կոնստրուկտիվ ծրագիր։

Քաղաքական, տնտեսական, պաշտպանական և մյուս բնագավառներում սոցիալիզմի երկրների համագործակցության հետագա խորացումը, նրանց համատեղ կազմակերպությունների՝ Վարշավայի պայմանագրի և Տնտեսական փոխօգնության խորհրդի կոնստրուկտիվ գործունեությունը հուսալիորեն ծառայում են խաղաղության և պրոգրեսի գործին։

Կենտկոմի պլենումը լիովին հավանություն է տալիս Աֆղանստանին բազմակողմանի օգնություն ցույց տալու ձեռնարկված միջոցներին՝ դրսից կատարվող այն զինված հարձակումներն ու միջամտությունը կասեցնելու գործում, որոնց նպատակն է խեղդել աֆղանական հեղափոխությունը և ռազմական ագրեսիայի պրոիմպերիալիստական հենակետ ստեղծել ՍՍՀՄ-ի հարավային սահմաններում։ Պլենումն արտահայտվում է չմիանալու քաղաքականություն վարող Աֆղանստանի շուրջն ստեղծված դրության քաղաքական կարգավորման օգտին։ Դրա համար պահանջվում են, ինչպես հայտարարել է ԱԴՀ կառավարությունը, այդ երկրի դեմ ուղղված ագրեսիայի լրիվ դադարեցում և հուսալի երաշխիքներ արտասահմանից ձեռնարկվող քայքայիչ գործողությունների դեմ։

Պլենումը հավաստում է արդի պայմաններում միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության ու ակտիվ գործողությունների, երկկողմ ու բազմակողմ, ռեգիոնալ և համաշխարհային հիման վրա եղբայրական կուսակցությունների համագործակցության հսկայական նշանակությունը՝ հանուն խաղաղության ու սոցիալական պրոգրեսի, ընդդեմ իմպերիալիզմի ու նրա ագրեսիվ հակաժողովրդական պլանների մղվող պայքարում։

Պլենումը Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների՝ Փարիզում կայացած հանդիպումը համարում է զգալի իրադարձություն կոմունիստական շարժման կյանքում, հակապատերազմական ուժերի, բարի կամքի բոլոր մարդկանց ակտիվացման կարևոր գործոն՝ ի պաշտպանություն խաղաղության և միջազգային անվտանգության։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը նշում է, որ արդի միջազգային իրադրության մեջ առկա են Սովետական Միության բոլոր ազգերի և ազգությունների բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության առավել սերտ համախմբումը կոմունիստական կուսակցության շուրջը և նրանց ջերմ աջակցությունը ՍՄԿԿ-ի ու սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությանը։

Կենտկոմի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ կուսակցությունը, սովետական ժողովուրդը բոլոր ջանքերը կգործադրեն տասներորդ հնգամյա պլանի հաջող կատարմամբ է՛լ ավելի ամրապնդելու մեր սոցիալիստական հայրենիքի հզորությունը, որը մեր կուսակցության և սովետական պետության լենինյան խաղաղասիրական կուրսի արդյունավետ կենսագործման հիմքն է։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1980 թվականի հունիսի 6-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց «Տարերային աղետի հետևանքները վերացնելու և հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1980 թվականի և տասներորդ հնգամյակի պլանների կատարումն ապահովելու միջոցառումների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Լենինյան շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ք. Լ. Մանդալյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, Արարատի շրջանի Ավշար գյուղի կոլտնտեսության տրակտորիստ ընկ. Հ. Մ. Ջաֆարյանը, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի հորատող ընկ. Ա. Բ. Գրիգորյանը, ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. Լ. Գ. Սահակյանը, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր ընկ. Հ. Վ. Թարջումանյանը, ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Լ. Մկրտչյանը, Հայկական ՍՍՀ սննդարդյունաբերության մինիստր ընկ. Ս. Վ. Առաքելյանը, ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Դ. Գրիգորյանը, Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստր ընկ. Ա. Ա. Գևորգյանը, Հայկական ՍՍՀ գյուղական շինարարության մինիստր ընկ. Գ. Ա. Թադևոսյանը, ձեռնարկության դիրեկտոր ընկ. Է. Ա. Պետրոսյանը:

Կենտկոմի պլենումը քննարկված հարցի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումը քննարկեց նաև ««ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների լույսի ներքո կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» ՀԿԿ Կենտկոմի 1977 թվականի ապրիլյան պլենումի որոշման կատարման ընթացքի մասին» հարցը:



Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Հ. Մ. Ոսկանյանը:

Մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ 26 կոմիսարների շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Պ. Մելքոնյանը, ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Ռ. Բարիկյանը, ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ա. Տուրյանը, Լենինականի բամբակագործվածքային արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար ընկ. Ս. Հ. Կարապետյանը:

Քննարկված հարցի վերաբերյալ ընդունվեց որոշում:

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուլտուրայի բաժնի վարիչ հաստատեց ընկ. Ս. Ս. Ավետիսյանին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի տրանսպորտի և կապի բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Ս. Մինասբեկյանին:

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Ն. Պ. Գոմիկոն:

---

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր։

Այսօր Կենտկոմի պլենումը քննարկում է տարերային աղետի հետևանքները վերացնելու, հնգամյակի եզրափակիչ տարվա և ամբողջությամբ վերցրած հնգամյակի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարումն ապահովելու գործում հանրապետության կուսակցական կազմակերպության առջև ծառացած խնդիրները։

Ապրիլի կեսերին տեղացած աննախադեպ առատ ձյունը և սկսված խիստ ցրտերն ու քամիները, ընդգրկելով հանրապետության գրեթե ամբողջ տերիտորիան, զգալի վնաս հասցրին ժողովրդական տնտեսությանը և, առաջին հերթին, գյուղատնտեսությանը։ Հատկապես տուժեցին խաղողի և պտղատու այգիները։ Փչացան խորդենու տնկարկները, պոմիդորի, ինչպես նաև մասնակիորեն բանջարեղենի և ծխախոտի սածիլները ջերմոցներում, բազմամյա և միամյա խոտաբույսերի ցանքերը, գարնանացան հացահատիկային և այլ կուլտուրաներ։ Տեղի ունեցավ անասունների անկում։

Տարերային աղետից անմիջապես հետո տեղերում հանրապետական մարմինների ստեղծած մասնագիտական հանձնաժողովների, ինչպես նաև ՍՍՀՄ գյուղատնտեսության և սննդարդյունաբերության մինիստրությունների մասնագետների կատարած հետազոտությունների տվյալներով պտղատու կուլտուրաների բերքի կորուստը գնահատվել է 65—70 տոկոս, խաղողի բերքի կորուստը՝ 60—65 տոկոս։ Արձանագրված են կերային կուլտուրաների կանաչ զանգվածի մեծ չափերի հասնող կորուստներ։

Գյուղատնտեսական հումքի նախատեսված ծավալի պակաս ստացումը խիստ բացասաբար կանդրադառնա սննդարդյունաբերության ձեռնարկությունների արտադրական պլանների կատարման վրա ինչպես ընթացիկ տարում, այնպես էլ եկող տարի։ Այս ամենը զգալիորեն կազդի հանրապետության առևտրի շրջանառության և բյուջեի վրա։ Հիշյալ հանգամանքները, ինչպես նաև տարերային աղետի հետևանքները հաղթահարելու նպատակով իրականացվող աշխատանքների ծավալները լրացուցիչ լարվածություն են հարուցում հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1980 թ. պլանների մեջ, որոնք առանց այն էլ շատ լարված էին այն հանգամանքների բերումով, որոնց մասին մանրամասնորեն խոսվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1979 թվականի դեկտեմբերյան պլենումում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1979 թվականի դեկտեմբերյան պլենումը խնդիր դրեց ապահովել հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման հնգամյա առաջադրանքների անվերապահ կատարումը։ Արդյունաբերության բնագավառում, որի արտադրության ծավալների աճը կուսակցության XXV համագումարի կողմից հաստատված ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—80 թթ. հիմնական ուղղություններով նախատեսված է 43—47 տոկոս, պլենումը անհրաժեշտ համարեց այն հասցնել 47 տոկոսի մակարդակին, այսինքն՝ առաջադրանքի վերին սահմանագծին։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը

*) Տպագրվում է հապավումներով։



մանրակրկիտ կերպով ուսումնասիրեցին տարերային աղետից հետո ժողովրդական տնտեսության մեջ ստեղծված իրավիճակը։ Ձեռնարկված և ձեռնարկվող միջոցառումները, մեր հնարավորությունների համակողմանի վերլուծությունը հանգեցրին այն հետևության, որ կարելի է և պետք է ուժի մեջ թողնել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1979 թվականի դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրը։ Մենք կարող ենք և պետք է կատարենք տասներորդ հնգամյակի առաջադրանքները։

Ինչի՞ վրա է հիմնվում այս հետևությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության կողմից, ինչպես միշտ, այս անգամ ևս հանրապետությանը թե՛ բարոյական և թե նյութական մեծ օգնություն է ցույց տրվել։

Տարերային աղետից հետո իսկույն ևեթ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, կուսակցության և կառավարության մյուս ղեկավարները անձամբ հետաքրքրվեցին իրերի վիճակով, իրենց հիրավի զգայուն վերաբերմունքով քաջալերեցին կադրերին, բոլոր աշխատավորներին՝ հաղթահարելու ստեղծված դժվարությունները, կոնկրետ օգնություն ցույց տվեցին հանրապետությանը հասած աղետի հետևանքների արագ վերացման միջոցառումներ մշակելու և իրականացնելու գործում։

Մեզ սատար կանգնեց մեր ամբողջ երկիրը։ Մենք զգացինք մեր մեծ հայրենիքի եղբայր ժողովուրդների աջակցությունը։ Բոլոր միութենական հանրապետությունները անհրաժեշտ օգնություն ցույց տվեցին դրությունը շտկելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հատուկ որոշում ընդունեցին տարերային աղետի հետևանքները վերացնելու նպատակով հանրապետությանը օգնություն ցույց տալու միջոցառումների մասին, որը կենսականորեն կարևոր նշանակություն ունի Սովետական Հայաստանի էկոնոմիկայի համար։ Նախատեսված է գյուղատնտեսությանը, վերամշակող արդյունաբերությանը, բնակարանային-կոմունալ տնտեսությանը և բնակչությանը տնտեսական, ֆինանսական և նյութատեխնիկական օգնություն ցույց տալու միջոցառումների լայն կոմպլեքս։

Լրացուցիչ քանակությամբ ֆինանսական և նյութական ռեսուրսներ, մեքենաներ, մեխանիզմներ և այլ տեխնիկա են հատկացված աղետից տուժած արտադրական, կուլտուր-կենցաղային օբյեկտների նորոգման ու վերականգնման աշխատանքների համար։

Տարերային աղետից տուժած կոլտնտեսություններին և սովխոզներին օգնություն ցույց տալու նպատակով, բացառության կարգով դուրս է գրված ՍՍՀՄ պետբանկի կարճատև վարկերի գծով նրանց ժամկետանց պարտքը։ Երկարաձգվել են ՍՍՀՄ պետբանկի վարկերի գծով կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների 1980—81 թվականների վճարումները։

1980 թվականի միութենական բյուջեի լրացուցիչ եկամուտների հաշվին հանրապետության գյուղատնտեսության մինիստրության սովխոզների և մյուս պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների սեփական շրջանառու միջոցները լրացնելու նպատակով հատկացվել է համապատասխան գումար։

Հանրային անասնապահության կարիքների համար օգնության կարգով լրացուցիչ տրվել է 30 հազար տոննա խտացրած կեր, փչացած ցանքատարածությունները վերացնելու համար՝ անհրաժեշտ քանակությամբ սերմացու և 50 հազար տոննա հանքային պարարտանյութ։ Տրամադրվել են նաև բույսերի պաշտպանության քիմիական միջոցներ և գյուղատնտեսական տեխնիկա։

Գյուղական բնակչությանը միանվագ օգնություն ցույց տալու համար հատկացվել են ֆինանսական ռեսուրսներ, ինչպես նաև շինանյութեր վաճառքի համար։

Վերամշակող արդյունաբերության համար գյուղատնտեսական հումքային ռեսուրսների գոյացած պակասը փոխհատուցելու և հանրապետության սննդարդյունաբերության ձեռնարկությունների կողմից 1980 թվականի արտադրական

պլանների կատարումն ապահովելու նպատակով լրացուցիչ հատկացվել են անհրաժեշտ քանակությամբ գինենյութեր, կոնյակի հնեցված սպիրտ, կակաո-բակլա և հումքի այլ տեսակներ:

Ինչպես տեսնում եք, հանրապետությանը մեծ և կոնկրետ օգնություն է ցույց տրվել:

Դա հանրապետության, հայ ժողովրդի նկատմամբ կուսակցության և կառավարության հոգատարության ևս մի դրսևորում է, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրականացման, մեր մեծ հայրենիքի ժողովուրդների եղբայրական բարեկամության և փոխօգնության մի նոր վառ վկայություն:

Թույլ տվեք Կենտկոմի պլենումի անունից, հանրապետության կուսակցական կազմակերպության, կոմունիստների, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների անունից ՍՄԿԿ Կենտկոմին, Կենտկոմի քաղբյուրոյին, սովետական կառավարությանը, անձամբ Թանկագին Լ. Ի. Բրեժնևին անկեղծ ու սրտագին շնորհակալություն հայտնել մեր հանրապետությանը ցույց տրված մեծ, իսկական հայրական հոգատարության և օգնության համար ու հավաստիացնել, որ մենք բոլոր ջանքերը կգործադրենք ապահովելու առաջադրված նոր խնդիրների կատարումը:

Ստեղծված բարդ իրավիճակում Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն, հանրապետության կառավարությունը անհետաձգելի միջոցներ ձեռնարկեցին տարերային աղետի հետևանքները վերացնելու համար: Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները հենց սկզբից կոնկրետ գործունեություն ծավալեցին կոլտնտեսությունների, սովխոզների, ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատավորական կոլեկտիվներին, գյուղի բոլոր աշխատավորներին մոբիլիզացրին՝ տարերքի դեմ պայքարելու, հնարավոր նոր կորուստները կանխելու, պատճառված վնասը վերացնելու համար:

Մենք պետք է մեծ գոհունակությամբ նշենք այն հիրավի անձնվեր, հերոսական աշխատանքը, որ կատարեցին մեր կոլտնտեսականները, բանվորները, մասնագետները, գիտնականները, գյուղական ամբողջ բնակչությունը տարերքի դեմ մղվող պայքարում:

Մենք ամենուրեք վկա եղանք այն բանին, թե ինչպես նրանք բնության քմահաճույքներին հակադրում էին իրենց կամքն ու հաստատակամությունը, տարերքը դիմագրավելու, դժվարությունները հաղթահարելու և հաղթող դուրս գալու վճռականությունը:

Գործադրելով իրենց գիտելիքները, փորձը, իրականացնելով գիտնականների և մասնագետների հանձնարարականները, մեր գյուղի աշխատավորները հասան այն բանին, որ գործնականում ապահովեցին տնտեսությունների նորմալ գործունեությունը, շատ կարճ ժամանակում վերացրին աղետի առաջին հետևանքները, հուսադրող վիճակի հասցրին բազմամյա տնկարկները, ցանքերն ու պլանտացիաները: Հատկապես հարկ է նշել կուսակցության գյուղական շրջանային կոմիտեների կազմակերպված և հստակ աշխատանքը, որոնք օպերատիվ կերպով, բանիմացորեն կազմակերպեցին և գլխավորեցին այդ դժվարին գործը:

Վստահությամբ կարելի է ասել, որ տարերքի պատճառած վնասը վերացնելու պայքարի առաջին փուլը մեր գյուղի աշխատավորները շահեցին: Ուղղակի կորուստները նվազագույնի են հասցվել, վնասը հնարավորին չափ վերացվել է: Հմտորեն կիրառված ագրոտեխնիկական միջոցառումները, հաստատակամ աշխատանքը, խնամքով մշակված հողը կտան իրենց պտուղները: Ամբողջ կատարվածը դրականապես կանդրադառնա ընթացիկ տարվա բերքի վրա, կփոխհատուցվի բազմապատիկ: Մենք արդեն վստահորեն կարող ենք ասել, որ լավ հիմքեր են դրված հնարավոր առավելագույն բերքի ստացման համար:

Այս բարձր ամբիոնից, Կենտկոմի պլենումի անունից մենք անկեղծ շնորհակալության խոսքեր ենք ուղղում հանրապետության դաշտերի և ֆերմաների աշխատավորներին, գիտնականներին և մասնագետներին՝ նրանց անձնվեր, հայրենասիրական աշխատանքի համար, ցուցաբերած կոմունիստական բարձր



գիտակցականության, պարտքի ու պատասխանատվության զգացման համար և վստահություն ենք հայտնում, որ նրանք այսուհետ ևս կաշխատեն այնպես, որ 1980 թվականը ևս դառնա բարձր ցուցանիշների տարի:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը, կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները միջոցառումներ ձեռնարկեցին, մոբիլիզացրին արդյունաբերության, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատավորական կոլեկտիվների ջանքերը՝ լրացուցիչ արտադրանք թողարկելու, այն ճեղքվածքը վերացնելու համար, որ գոյանում է արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալների մեջ՝ վերամշակման համար գյուղատնտեսական հումքի ծավալի սպասվելիք նվազման պատճառով: Այստեղ ևս մենք պետք է նշենք այն բարձր գիտակցականությունն ու քաղաքական հասունությունը, որպիսիք բնորոշ են մեր փառապանծ բանվոր դասակարգին: Աշխատավորական շատ կոլեկտիվներ ստանձնում են լրացուցիչ արտադրանք թողարկելու, գյուղին կոնկրետ օգնություն ցույց տալու պարտավորություններ: Նախնական տվյալներով լրացուցիչ արտադրանքի թողարկումը կկազմի 40—50 միլիոն ռուբլի:

Այսօր պլենումում մենք պետք է որոշենք մեր թե՛ քաղաքական, թե՛ կազմակերպչական և թե տնտեսական աշխատանքի տակտիկան, ելնելով ժամանակի տվյալ կոնկրետ փուլում ստեղծված իրավիճակից: Խոսելով տակտիկական խնդիրների մասին, բնավ չպետք է մոռանալ, որ մենք պետք է հետևողականորեն և անշեղորեն իրականացնենք կուսակցության XXV համագումարի առաջադրած բոլոր հիմնարար խնդիրները, կուսակցության արդի տնտեսական քաղաքականությամբ թելադրվող խնդիրները, ընդ որում, այդ աշխատանքին տալով առավել մեծ հստակություն և արդյունավետություն:

Այնուհետև ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը անդրադառնում է այն խնդիրներին, որոնց լուծումը կապահովի տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարվա ծրագրի կատարումը:

Ելնելով ստեղծված դրությունից, ասում է նա, գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները, տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները պետք է բոլոր միջոցները ձեռնարկեն՝ կիրառելու ագրոտեխնիկական այն միջոցառումների կոմպլեքսը, որոնք նպաստում են ցրտահարությունից տուժած խաղողի և պտղատու այգիների շուտափույթ վերականգնմանը:

Պետք է նշել, որ այդ ասպարեզում քիչ բան չի արվել, և մեր աշխատավորների ջանքերը գովեստի են արժանի: Բայց, ցավոք, դա արվում է ոչ ամենուրեք: Առանձին շրջաններում երևան են եկել ճակատագրականության, անպատասխանատվության ռեցիդիվներ, փորձեր են արվում հնարավոր առավելագույն բերքի վերականգնման նպատակով պատշաճ միջոցներ չձեռնարկելու մեղքը գցել բնության վրա, տեղի-անտեղի վկայակոչելով աղետը:

Խաղողագործական շրջաններ կատարած մեր այցելությունները հաստատեցին այդ: Փաստերի համար, ինչպես ասում են, հարկ չկա հեռու գնալ: Կուսակցության Մասիսի շրջկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ս. Խաչատրյանի և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետի գործկոմի նախագահ ընկ. Շ. Ղազարյանի հետ Մասիսի շրջանի տնտեսությունների մեծ մասի խաղողի այգիների զննությունը ցույց տվեց, որ այդտեղ խաղողի այգիները բարձիթողի վիճակում են, ծածկվել են մոլախոտերով: Ըստ երևույթին, Մասիսի շրջանի ղեկավարները կարծում են, թե իրենց բարեհոգությունն ու անպատասխանատվությունը կարելի է գցել տարերքի վրա: Ցավոք, նման փաստերը եզակի չեն:

Դրա հետ հաշտվել չի կարելի: Այսօր պլենումը պետք է բոլոր շրջկոմներից, շրջգործկոմներից, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներից և կուսկազմակերպություններից պահանջի՝ ապահովել ագրոտեխնիկական այն բոլոր միջոցառումների անվերապահ կիրառումը, որոնք նպաստում են ոչ միայն խաղողի և պտղատու այգիների վերականգնմանը, այլև հնարավոր առավելագույն բերքի ստացմանը:

Ինտենսիվ կերպով պարարտանյութեր տալու և սնուցելու, ոռոգելու և այլ

միջոցառումների հետ մեկտեղ, խիստ անհրաժեշտ է ուշադրություն նվիրել հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարի բոլոր միջոցների ճիշտ ու ժամանակին գործադրմանը։ Պակաս կարևոր չէ նաև բազմամյա տնկարկների պաշտպանումը կարկտահարությունից։ Ուստի անհրաժեշտ է ակտիվացնել հակակարկտային ծառայության աշխատանքը։

Ստեղծված պայմաններում աճում են գիտական հիմնարկությունների և, առաջին հերթին, խաղողագործության ու պտղաբուծության, բույսերի պաշտպանության գիտահետազոտական ինստիտուտների, Հայաստանի գյուղատնտեսական ինստիտուտի և այլ հիմնարկությունների, նրանց կուսակցական կազմակերպությունների, գիտնականների և մասնագետների դերն ու պատասխանատվությունը։ Նրանք պետք է արտադրությանը տան ամենօրյա խորհուրդներ ու հանձնարարականներ, ցույց տան կոնկրետ օգնություն։

Խաղողի և պտուղների բերքի ապահովումը այսօր մեր առաջնահերթ խնդիրն է, ուստի բերքի ամեն մի նոր կորուստ պետք է գնահատվի որպես անտնտեսվարության և անպատասխանատվության հետևանք, իսկ մեղավորները պետք է խիստ պատիժ կրեն։

Բերքի վերականգնման նպատակով իրականացված մեծ աշխատանքները, ինչպես նաև խաղողագործության և պտղաբուծության ասպարեզում ձեռք բերված առաջընթացը, այդ ճյուղերի նյութատեխնիկական բազայի անշեղ ամրապնդումը, մեր խաղողագործների և այգեգործների կուտակած փորձն ու վարպետությունը, գյուղատնտեսական արտադրության ղեկավարման մակարդակի աճը Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեին հիմք են տալիս կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների ու մասնագետների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր դնել՝ այս տարի պետությանը վաճառել մոտ 160—170 հազար տոննա խաղող և 65—70 հազար տոննա պտուղ։

Հաշվի առնելով հիշյալ ծավալները, պետպլանը և գյուղատնտեսության մինիստրությունը յուրաքանչյուր շրջանի համար մշակել են լրացուցիչ առաջադրանքներ, որոնք և հաստատված են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կողմից։

Այդ առաջադրանքների կատարումը պարտադիր է։

Գյուղատնտեսության և սննդարդյունաբերության մինիստրությունները, կուսակցության շրջկոմները և շրջգործկոմները պետք է այդ առաջադրանքները իջեցնեն տնտեսություններին, բրիգադներին, օղակներին և բոլոր միջոցները ձեռնարկեն դրանց կենսագործման համար։ Յուրաքանչյուր օղակ, բրիգադ և տնտեսություն պետք է հաշվետու լինի այդ առաջադրանքների կատարման համար։

Մթերումների մինիստրությունը, Հայկոոպի վարչությունը, շրջանային կուսակցական և սովետական մարմինների հետ համատեղ, պետք է ուժեղացնեն բնակչությունից խաղողի և պտուղների գնումը կազմակերպելու աշխատանքը։

Կարևոր նշանակություն է ստանում խաղողի և պտղատու նոր այգիների հիմնման և հների վերակառուցման գործը։ Այս հարցը հատուկ քննարկման առարկա դարձավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյում։ Ընդունված է համապատասխան որոշում։

Կուսակցության շրջկոմները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները պետք է մշակեն այդ կարևոր գործում եղած լուրջ թերությունները վերացնելու և բազմամյա տնկարկների հիմնման պլանները անպայման կատարելու հատակ ծրագիր։

Խաղողագործությունն ու պտղաբուծությունը ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելը պահանջում է ստեղծել պտղատու և խաղողի այգիների բարձրարդյունավետ խոշոր զանգվածներ՝ լիովին մեքենայացնելով մշակության և բերքահավաքի բոլոր աշխատատար պրոցեսները։ Ուստի մենք պետք է նվազ արդյունավետ և ցրտահարված խաղողի ու պտղատու դուրս գրված այգիների տարածությունների վրա իրականացնենք կուլտուր-տեխնիկական միջոցա-



ռումների ամբողջական կոմպլեքս և հիմնենք ինտենսիվ տիպի պտղատու և խաղողի նոր այգիներ։

Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտահետազոտական ինստիտուտները պետք է արմատապես վերակառուցեն իրենց աշխատանքը և մեծ տարածությունների վրա սկսեն բարձրարդյունավետ ցրտադիմացկուն սորտերի մշակության աշխատանքները։ Դա, մի կողմից, մեզ հիմնականում կազատի բնության քմահաճույքների հետևանքներից, մյուս կողմից՝ կտա միջոցներ և աշխատանքի մեծ խնայողություն, քանի որ խաղողի մշակության ժամանակ կատարվող ծախսումների ավելի քան 70 տոկոսը ընկնում է այգեթաղին և այգեբացին։

Ինչպես տեսնում եք, մեր առջև ծառացած են խաղողի և պտղատու այգիների տարերային աղետի պատճառած հետևանքները վերացնելու մեծ, դժվարին ու պատասխանատու խնդիրներ, և մեր ուղղակի պարտականությունն է պատվով կատարել այդ խնդիրները։

Մի քանի խոսք եթերայուղային կուլտուրայի՝ խորդենու մասին։ Այդ կուլտուրան ամենից շատ է տուժել։ Մենք պետք է ժամանակին կատարենք պլանտացիաների լիակատար պահպանման և խորդենու աճեցման ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը։

Գյուղատնտեսության մինիստրությունը, սննդարդյունաբերության մինիստրությունը, կուսակցության Հոկտեմբերյանի շրջկոմն ու ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմը և էջմիածնի շրջկոմն ու շրջսովետի գործկոմը պետք է ապահովեն մնացած պլանտացիաներից եկող տարիների բերքի համար մինչև 75 միլիոն կտրոնների և տնկիների ստացումը։ Հարկավոր է, որ գյուղատնտեսության մինիստրությունը ապահովի բարձր վերարտադրության խորդենու 200 հազար կտրոնների և տնկիների ներմուծումը հանրապետություն։

Մենք շատ բան պետք է անենք նաև կերի կուտակումը կազմակերպելու և 1980—81 թվականների ժամանակաշրջանում անասունների ձմեռումը հաջողությամբ անցկացնելու համար։

Կերի կայուն բազա ստեղծելու հարցերի մասին մանրամասնորեն խոսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1980 թվականի ապրիլյան պլենումում։ Հարկ կա համառոտակի կանգ առնել մի շարք հարցերի վրա, որոնք պահանջում են անհետաձգելի միջոցառումներ և օպերատիվ լուծում։

Ըստ գյուղատնտեսության մինիստրության կանխատեսումների, ընթացիկ տարում հանրապետությունում հնարավորություններ կան կուտակելու 2,3—2,4 միլիոն տոննա կոշտ և հյութալի կեր։ Կերի կուտակումը հաջող կազմակերպելու և այդ դժվարին, բայց ռեալ խնդիրը կատարելու համար պետք է տառացիորեն մոտակա օրերին, ըստ յուրաքանչյուր շրջանի և տնտեսության քննարկվեն կերային կուլտուրաների, ցանքի, մշակության և աճեցման հետ, կուտակման տեխնոլոգիայի, կերերի պահպանման և օգտագործման հետ առնչված հարցերի ամբողջ կոմպլեքսը, ինչպես նաև կերարտադրության մյուս հարցերը։ Դա առավել հրատապ է դառնում մանավանդ այն պատճառով, որ երաշտի վտանգ է նկատվում։

Մեզ հարկավոր է, կերի կուտակման պլանները կատարելու հետ մեկտեղ, ընթացիկ տարում յուրաքանչյուր տնտեսությունում ստեղծել կերի 20—25 տոկոսով ավելի անհրաժեշտ ռեզերվներ ու ապահովագրական ֆոնդեր, քան եղել է անցյալ տարի։ Իսկ դա նշանակում է, որ հարկավոր է լրացուցիչ կերպով կուտակել 150—160 հազար տոննա խոտ, 120—130 հազար տոննա սիլոս, 100 հազար տոննա սենաժ և 50 հազար տոննա կերի արմատապտուղ։

Այս առաջադրանքները կիջեցվեն շրջաններին ու տնտեսություններին և անպայման պետք է կատարվեն։

Այդ նպատակով անհրաժեշտ է ապահովել դաշտային կերարտադրության ռեզերվների, բոլոր բնական կերահանդակների, մարգագետինների և արոտավայրերի առավել լիակատար օգտագործումը, ժամանակին և որակով կատարել բազմամյա խոտաբույսերի յուրաքանչյուր հարը և հավաքումը այն հաշվով,

որ պայմաններ ստեղծվեն ոռոգելի հողերում առվույտի առնվազն հինգ հար և կորնգանի երկու հար ստանալու համար:

Ելնելով յուրաքանչյուր տնտեսության կոնկրետ պայմաններից, անհրաժեշտ է բոլոր լրացուցիչ հնարավորություններն օգտագործել կերի կուտակումը ավելացնելու համար, ներառյալ խոտի հայթայթումը արոտավայրերի առանձին հատվածներում, գետահովիտներում, անտառահանդակներում, ճանապարհամերձ շերտերում և խոտածածկույթ ունեցող այլ հողամասերում:

Կերի կուտակման կարևոր ռեզերվ են խողանացանքերը, միջանկյալ և խտացված ցանքերը: Հանրապետությունում շատ տնտեսություններ կան, որոնք, օգտագործելով այդ հնարավորությունները, ստանում են կերային կուլտուրաների լրացուցիչ բերք: Սակայն այդ ռեզերվը մեզանում դեռևս անբավարար է օգտագործվում: Գյուղատնտեսության մինիստրությունը և շրջանային կազմակերպությունները վաղահաս բանջարեղենի, հացահատիկային կուլտուրաների և կարտոֆիլի բերքահավաքից հետո պետք է կազմակերպեն եգիպտացորենի խողանացանք ավելի քան 5 հազար հեկտար տարածության վրա և միջանկյալ ցանք՝ ավելի քան 3,5 հազար հեկտար տարածության վրա:

Անհրաժեշտ է նաև խիստ հաշվառման տակ առնել և պահպանել անցած տարվա բերքից ստացված բոլոր տեսակի կերերը և հատկապես ծղոտը, կազմակերպել այդ ծղոտի սիլոսացումը խմորումով եգիպտացորենի, առվույտի և կերային այլ կուլտուրաների հետ, սիլոսի պատրաստման համար լիովին օգտագործել շաքարի ճակնդեղի, կերի արմատապտուղների և կարտոֆիլի փրերը, բանջարաբոստանային կուլտուրաների մնացուկները, վայրի այլ խոտաբույսեր:

Պետք է առավելագույնս օգտագործել բանջարաբուծության, սննդի, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության և հասարակական սննդի մնացուկները:

Կարևոր նշանակություն ունի սերմնաբուծության կազմակերպումը: Գյուղատնտեսության մինիստրությունը պետք է անհապաղ կազմակերպի բոլոր սերմնադաշտերի հետազոտումը, ապահովի դրանց ուշադիր խնամքը, ամեն ինչ անի կատարելու սերմնացուի կուտակման պլանները, սահմանի տեսակավոր և հիբրիդային սերմացուի լրացուցիչ կուտակման ծավալներ:

Բանջարաբուծությունը, շարունակում է զեկուցողը, հանրապետության գյուղատնտեսության առաջատար ճյուղերից է: Վերջին տարիներին մեծ աշխատանք է կատարվել նրա ինտենսիվացման և բանջարեղենի արտադրության ծավալի մեծացման համար: Բավական է ասել, որ հնգամյակի չորս տարում պլանից ավելի արտադրվել է ավելի քան 155 հազար տոննա բանջարեղեն:

Սակայն բանջարաբուծության վիճակի համակողմանի վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ կարևոր ճյուղում քիչ չեն անհետաձգելի վերացում պահանջող թերություններն ու վրիպումները: Հանրապետությունում դեռևս պատշաճ ուշադրություն չի նվիրվում բանջարեղենի տեսակների արտադրության պրոբլեմին:

Վերջին տարիներին բանջարեղենի մթերումների պլանների կատարումը ապահովվում է պոմիդորի, գլուխ-սոխի և կաղամբի վաճառքի պլանները գերակատարելու հաշվին, որոնց տեսակարար կշիռը մթերումների ընդհանուր ծավալի մեջ կազմում է 82—86 տոկոս: Բանջարեղենի մնացած 14 տեսակներին, ինչպես տեսնում եք, տրված է ընդամենը 18—14 տոկոս: Հանրապետությունում սիստեմատիկաբար, տարեցտարի չեն կատարվում պղպեղի, բադրիջանի, կանաչ լոբու, կանաչ սիսեռի և այլ բանջարեղենի մթերումների պլանները:

Ցածր է նաև մի շարք շրջանների ղեկավարների պատասխանատվությունը պետությանը բոստանային կուլտուրաների վաճառքի պլանների կատարման գործում: Պլանները չկատարելը հասցնում է շուկայում բանջարեղենի և բոստանային կուլտուրաների հիշյալ տեսակների գների բարձրացմանը, որը առաջ է բերում բնակչության արդարացի դժգոհությունը: Այս մասին ամենայն լրջությամբ խոսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1979 թվականի դեկտեմբերյան պլենումում: Ցավոք, շատ ընկերներ, ըստ երևույթին, հարկ եղած հետևությունները չեն արել իրենց հասցեին եղած քննադատությունից:



Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գյուղատնտեսության մինիստրությունից, սննդարդյունաբերության մինիստրությունից, կուսակցության շրջկոմներից, շրջգործկոմներից պահանջում է շտկել վիճակը, բանջարանոցային կուլտուրաների ցանքը կատարել սահմանված տեսականուն խստիվ համապատասխան և այդ ցուցանիշը անպայման հաշվի առնել որպես կարևոր չափանիշ աշխատանքի վերջնական արդյունքները գնահատելիս:

Անցած տարիների պրակտիկան ցույց է տալիս, որ մեծ դժվարություններ են ծագում բանջարանոցային կոնվեյերի կազմակերպման գործում: Գործի հաջողությունը մեծապես որոշում են բանջարեղենի ժամանակին հավաքումը և փոխադրումը: Հաշվարկված է, որ միայն դրա շնորհիվ կարելի է խույս տալ բանջարեղենի կորուստներից, որոնք տարեկան կազմում են 10—15 տոկոս:

Խոսքն այն մասին է, որ սննդարդյունաբերության մինիստրության, առևտրի մինիստրության, Հայկոոպի վարչության հիմնական մթերող ձեռնարկությունները մատակարարող և տրանսպորտային կազմակերպությունների հետ համատեղ կազմեն բանջարեղենի ընդունման և սպառողներին առաքելու հստակ գրաֆիկ և անշեղորեն կատարեն այն: Քանի որ այս տարի ցրտերն ու անձրևները շատ շրջաններում խախտեցին ցանքի ժամկետները, բնականաբար, բերքի հավաքումը կարող է որոշ չափով ուշանալ, ուրեմն առավել ևս կարևոր է բոլոր ջանքերը գործադրել կազմակերպելու բանջարեղենի հստակ և համաչափ մատակարարումը, նախատեսել տեխնիկայով և ավտոտրանսպորտով մանևրելու հնարավորություններ:

Դրությունը լավ չէ նաև կարտոֆիլի ցանքի պլանների կատարման ասպարեզում: Ապարանի, Կամոյի, Ղափանի, Մարտունու, Հրազդանի, Սևանի շրջանների տնտեսությունները չեն կատարել պարենային այդ կարևոր կուլտուրայի տնկման պլանները:

Պլանային առաջադրանքները չկատարելը սերմացուի բացակայությամբ պատճառաբանելը անհիմն է:

Հիշյալ շրջանների կուսակցական ու սովետական մարմինների ղեկավարները պետք է շտապ կարգով եռանդուն միջոցներ ձեռնարկեն կարտոֆիլի ցանքի պլանային առաջադրանքները անպայման և ժամանակին կատարելու համար:

Այնուհետև ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց, որ չնայած ոռոգման ջրի օգտագործման որոշ բարելավմանը, այդ կարևոր գործում ևս լուրջ թերություններ կան: Շատ շրջաններում ու տնտեսություններում գյուղատնտեսական կուլտուրաները ջրելիս կատարվում է ոռոգման ջրի մեծ գերածախս: Ստուգումները վկայում են, որ բազմաթիվ տնտեսություններում չի կիրառվում շուրջօրյա և հատկապես գիշերային ջրումը, չկան ջրվորներ, չի գործում ջրման տեխնիկան: Եվ այս ամենը՝ հանրապետության սակավաջրության պայմաններում:

Անհրաժեշտ է բոլոր շրջաններում անցկացնել ակտիվներ՝ բոլոր ջրօգտագործողների և ոռոգման սիստեմի ներկայացուցիչների մասնակցությամբ և կոնկրետ միջոցներ մշակել ջրի արդյունավետ օգտագործման նպատակով:

Կատարելով «1979—1980 թվականների ձմռան ժամանակաշրջանում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները ավելացնելու համար անասնապահության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների, բոլոր անասնապահների առջև դրված խնդիրները, ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի 1980 թ. ապրիլյան պլենումի որոշումը, ֆերմաների աշխատողները հաստատակամորեն պայքարում են անասնապահության հետագա վերելքի համար:

Անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է անասնապահական մթերքների արտադրությունը: Հանրապետության կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում մեծ աշխատանք է ծավալվել անասուններին ամառային արոտային խնամքի փոխադրելու նպատակով:

Դրա հետ մեկտեղ շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտե-

ման արդյունավետ միջոցը, ասված է «ՍՍՀՄ նավթավերամշակման և նավթա-
քիմիական արդյունաբերության մինիստրությունում վերահսկողության և կա-
տարման ստուգման վիճակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշ-
ման մեջ:
Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ու նրանց ղեկա-
վարների պարտքն է հասնել այն բանին, որ կառավարչական ապարատի յու-
րաքանչյուր օղակ հստակորեն տեսնի իր դերն ու տեղը ժողովրդատնտեսական
պրոբլեմների լուծման, պետական պլանների և իրենց առջև ծառացած խնդիր-
ների կատարման գործում:
Հնգամյակի եզրափակիչ տարվա և ամբողջությամբ վերցրած հնգամյակի
սոցիալ-տնտեսական զարգացման պլանների և առաջադրանքների կատարումն
ու գերակատարումն ապահովելու ասպարեզում կուսակցական կազմակերպու-
թյունների կազմակերպչական և քաղաքական աշխատանքի հիմնական ուղղու-
թյուններից մեկը սոցիալիստական մրցության ըստ ամենայնի ծավալումն է,
նրա կողմնորոշումը դեպի որակական ցուցանիշները, դեպի ժողովրդատնտե-
սական վերջնական արդյունքները:
Ճյուղային և տերիտորիալ առումով 1980 թվականի պարտավորություն-
ների վերլուծությունը, դրանց կատարման ընթացքը ցույց են տալիս, որ դրանք,
ամբողջությամբ վերցրած, համապատասխանում են առաջադրված խնդիրնե-
րին և հիմնականում հաջողությամբ են կենսագործվում: Ավելին, աշխատավո-
րական շատ կոլեկտիվներ հայտնաբերել են նոր ռեզերվներ, ստանձնել լրա-
ցուցիչ սոցիալիստական պարտավորություններ, որոնց կատարումը հնարա-
վորություն կընձեռի զգալիորեն ավելացնելու ժողովրդական տնտեսության
համար կարևորագույն տարկաների թողարկումը, է՛լ ավելի արագացնելու
արտադրության ծավալների աճի տեմպերը: Այդպես են վարվել հանրապե-
տության թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները,
«Հայէլեկտրալույս» և այլ արտադրական միավորումների, «Ավտոգենմաշ» գոր-
ծարանի կոլեկտիվները:
Լավագույն աշխատավորական կոլեկտիվների սոցիալիստական պարտա-
վորությունների համար բնորոշ են քանակական և որակական խնդիրների օր-
գանական զուգորդումը, պարտավորությունների կողմնորոշումը դեպի պլա-
նային առաջադրանքների գերակատարումը՝ ամենից առաջ արտադրության
արդյունավետության և աշխատանքի որակը բարձրացնելու միջոցով, այսինքն՝
նպատակամղվածությունը կուսակցության XXV համագումարի պահանջների
կենսագործմանը:
Սակայն պարտավորությունները, որքան էլ մանրակրկիտ մշակված ու հիմ-
նավորված լինեն, ինքնըստինքյան չեն երաշխավորում հաջողությունը, դրանք
նախատեսված բնագծերին հասնելու մեծ պայքարի սկիզբն են միայն: Գլխա-
վորն այն է, որ օրավուր հաստատակամորեն, նպատակասլաց կերպով և անձ-
նվիրաբար կատարվի նախատեսվածը:
Ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գոր-
ծում մեր առաջավոր կոլեկտիվների հաջողության հիմքը հենց դա է: Ցավոք,
ոչ բոլոր կոլեկտիվներում են այդպես վարվում: Հաճախ որոշ տեղերում բավա-
րարվում են պարտավորություններ, ընդ որում, ոչ վատ պարտավորություններ
ընդունելով, բայց անհա մոռանում են դրանք կենսագործել, դրանց կատարումը
թողնում են ինքնահոսի:
Սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կուսակցության
շրջկոմների և քաղկոմների, ՀԱՄԽ-ի խնդիրն է վճռականորեն խափանել նման
երևույթները, սոցիալիստական մրցությանը տալ իսկապես գործարար բնույթ:
Անհրաժեշտ է յուրաքանչյուր ձեռնարկությունում, արտադրամասում, բրիգա-
դում, ֆերմայում, յուրաքանչյուր աշխատատեղում ամենօրյա վերահսկողու-
թյուն սահմանել պլանների, պարտավորությունների, այն ամենի կատարման
նկատմամբ, ինչ նախատեսված է: Դա պետք է դառնա կուսակցական, սովե-
տական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, ժողո-
վրդական վերահսկողության մարմինների կենսական գործը: Խոսքը վերա-
բերում է այնպիսի ստուգման, որը թույլ տա ամեն օր իմանալ, թե որ բրիգադ-



ները, արտադրամասերը, ֆերմաները, տեղամասերն են կատարել պլաններն
ու պարտավորությունները և որոնք՝ ոչ, ինչու նրանք չեն կատարել, ինչ պետք է
անել թերությունները վերացնելու համար, էլի ինչով օգնել մրցողներին:
Եվ այս ամենին անհրաժեշտ է տալ լայն հրապարակայնություն, որպեսզի
առաջավորները շրջապատված լինեն պատվով ու հարգանքով, իսկ նրանք,
ովքեր իրենց պարտավորությունը չեն կատարել և նրանք, ովքեր անհրաժեշտ
պայմաններ չեն ստեղծել բարձրարտադրողական և որակյալ աշխատանքի հա-
մար, պատասխանատվություն կրեն կոլեկտիվի, կուսակցական կազմակերպու-
թյան, հասարակության առջև:
Մի խոսքով, ընկերներ, պետք է ապահովել խոսքի ու գործի միասնությու-
նը: Այն, ինչ նախատեսվում է, պետք է անպայման կատարվի: Դա կարևոր է
մանավանդ այժմ, երբ մենք նախատեսում ենք տասներորդ հնգամյակի հաջող
ավարտման կոնկրետ միջոցներ:
Ասենք ուղղակի՝ մենք մեր առջև բարդ ու դժվարին խնդիր ենք դնում: Դրա
կատարումը մեզանից, բոլոր կոմունիստներից, բոլոր աշխատավորներից պա-
հանջում է ուժերի, կամքի, եռանդի ու գիտելիքների լիակատար նվիրում: Տեղ
չպետք է ունենան բարեհոգությունն ու անտարբերությունը: Մեր հաջողություն-
ների երաշխիքը կարող են լինել բարձր կարգապահությունը, կազմակերպվա-
ծությունը, գործարարությունը, հետևողականությունն ու հաստատակամու-
թյունը աշխատանքում, նախատեսված նպատակների համար ծավալած մեր
պայքարում:
Թույլ տվեք, վերջում ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հավաստիացնել
ՍՄԿԿ լենինյան Կենտկոմին, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշ-
խատավորները հնգամյակի եզրափակիչ տարին կդարձնեն հիրավի հարվա-
ծային աշխատանքի տարի, լենինաբար աշխատելու տարի, Հայաստանում սո-
վետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կու-
սակցության կազմավորման 60-ամյակը, ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարը
կնշանավորեն նոր մեծագործություններով կոմունիստական շինարարության
ասպարեզում:

---

# ՊԱՆԾԱԼԻ ՀՈԲԵԼՅԱՆԻՆ ԸՆԴԱՌԱՋ

**Ա. Ա. ՄԿՐՏՉՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի բաժնի վարիչ

*ԱՅՍ ՏԱՐՎԱ ՆՈՅԵՄԲԵՐԻՆ մեր հանրապետության աշ-
խատավորները ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ըն-
տանիքում հանդիսավորությամբ կնշեն Հայաստանում սովետական իշխանու-
թյան հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմա-
վորման 60-ամյակը։ Այդ խոշոր իրադարձությունը յուրովի ամփոփում է Սո-
վետական Հայաստանի կոմունիստների, հանրապետության բոլոր աշխատա-
վորների հեղափոխական պայքարի ու անձնվեր աշխատանքի փառապանծ
ուղին։*

*Նշանակալի հոբելյանը արժանավայել դիմավորելու համար ծավալվել է
կազմակերպչական և քաղաքական լայն աշխատանք։ Այդ աշխատանքը իրա-
կանացվում է այն օրերին, երբ երկրի կոմունիստները, ամբողջ սովետական
ժողովուրդը աշխատանքային և քաղաքական հարաճուն ակտիվության մթնո-
լորտում նախապատրաստվում են ՍՄԿԿ XXVI համագումարին։ Ինչպես ամբողջ
երկրի, այնպես էլ Սովետական Հայաստանի կոմունիստների ու աշխատավոր-
ների ուշադրության կենտրոնում են գտնվում ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի
հունիսյան պլենումի որոշումները, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քար-
տուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի.
Բրեժնևի զեկուցումը։*

*Հանրապետության փառապանծ հոբելյանի, ՍՄԿԿ XXVI համագումարի և
ՀԿԿ XXVII համագումարի նախապատրաստությունը օրեցօր ավելի ու ավելի
մեծ թափ է ստանում՝ վառ կերպով ցուցադրելով Սովետական Հայաստանի
կոմունիստների, աշխատավորների սերտ համախմբվածությունը հարազատ
կուսակցության շուրջը, նրանց վճռականությունը՝ արժանի ավանդ մուծելու
կոմունիզմի իդեալների հաղթանակի համար մղվող համաժողովրդական պայ-
քարում, ամրապնդելու ու զարգացնելու անխախտ բարեկամությունը ռուս մեծ
ժողովրդի, ՍՍՀՄ բոլոր եղբայրական ժողովուրդների հետ։*

*Հայոց հողում սոցիալիստական ստեղծարար աշխատանքի վեց տասնամ-
յակները վառ կերպով հաստատեցին մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական
կարգերի կենսահաստատ, վերափոխիչ ուժը։ Մեր ժողովրդի հեղափոխական
պայքարի ամբողջ պատմությունը, նրա աշխատանքային հաղթանակները ան-
խզելիորեն կապված են Վ. Ի. Լենինի անվան, կոմունիստական կուսակցության
գործունեության հետ։*

*Հայաստանի աշխատավորները ակտիվորեն արձագանքեցին և իրենց մաս-
նակցությունը բերեցին բազմազգ Ռուսաստանում ծայր առած պրոլետարական
հեղափոխական շարժմանը։ Հայ ժողովրդի լավագույն զավակները միշտ գտն-
վել են լենինյան կուսակցության մարտիկների շարքերում, հեղափոխական
պայքարի առաջին գծում։ Աշխատավոր մարդկանց երախտապարտ հիշողու-
թյան մեջ հավերժ կմնան լենինյան կուսակցության պանծալի մարտիկներ
Բոգդան Կնունյանցի, Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Կամոյի*



*(Ս. Տեր-Պետրոսյանց), Ալեքսանդր Մյասնիկյանի, Անաստաս Միկոյանի և
ուրիշների անունները։*

*Խոր բերկրանքով ընդունեց հայ ժողովուրդը Հոկտեմբերյան սոցիալիստա-
կան մեծ հեղափոխության հաղթանակի լուրը։ Վ. Ի. Լենինի և ՌԿ(բ)Կ Կենտ-
կոմի անմիջական օգնությամբ Հայաստանի բոլշևիկները անձնվեր, բուռն
գործունեություն ծավալեցին աշխատավորական հոծ զանգվածների շրջանում,
նրանց նախապատրաստելով դասակարգային մարտերի։ Հայաստանի աշխա-
տավորների հեղափոխական պայքարի հերոսական տարեգրության վառ էջ հան-
դիսացավ 1920 թվականի Մայիսյան ապստամբությունը, որը դարձավ սովե-
տական կարգերի գալիք հաղթանակի ավետաբերը։*

*Լենինյան վեհ գաղափարներով ոգեշնչված, Մեծ Հոկտեմբերի դրոշի ներքո
Հայաստանի աշխատավորները կոմունիստական կուսակցության գլխավորու-
թյամբ, հերոսական 11-րդ Կարմիր բանակի օգնությամբ տապալեցին շահա-
գործող կարգերը, դաշնակցականների հակաժողովրդական ռեժիմը, հայրենի
հողի վրա պարզեցին հեղափոխության հաղթական դրոշը։ Պրոլետարիատի մեծ
առաջնորդը ջերմորեն ողջունեց «իմպերիալիզմի լծից ազատագրված աշխա-
տավորական Սովետական Հայաստանին»։*

*Սովետական իշխանությունը նոր դարագլուխ բացեց հայ ժողովրդի բազ-
մադարյան պատմության մեջ՝ սոցիալիստական վերածնության և կոմունիս-
տական ստեղծարար աշխատանքի դարագլուխը։ Հաղթահարելով տնտեսա-
կան քայքայվածությունն ու զրկանքները, եղբայր ժողովուրդների հետ ուս-
ուսի պատվով անցնելով Հայրենական մեծ պատերազմի ծանր փորձություն-
ների բովով, Հայաստանի աշխատավորները հայրենի երկիրը վերածեցին բարձր
զարգացած տնտեսության, առաջավոր գիտության ու մշակույթի հանրապե-
տության։*

*Սովետական Հայաստանի 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում
ունեցած իր ելույթում ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ Սովետական Հայաս-
տանի օրինակը, նրա պատմական փորձը «կրկին ու կրկին համոզում են, որ
ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման և մե-
կուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղ-
բայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ
զարգացման շնորհիվ»։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ոգեշնչող ճառը, որում բարձր
գնահատական տրվեց հայ ժողովրդի նվաճումներին, նրա աշխատասիրությա-
նը, հայրենասիրությանը, ինտերնացիոնալիստական ոգուն, նշվեցին հանրա-
պետության հետագա զարգացման խնդիրները, այն գործունեության մարտա-
կան ծրագիր դարձավ Հայաստանի կուսակցական կազմակերպությունների,
աշխատավորների համար։*

*Տասը տարի է մեզ բաժանում այդ անմոռանալի օրերից։ Իրագործելով
ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումները, մեր հանրապետության աշխատավորները
վերջին տարիներս նոր հաջողությունների են հասել էկոնոմիկայի, գիտության
ու մշակույթի զարգացման ասպարեզում, իրենց ծանրակշիռ ավանդը ներդնելով
հասուն սոցիալիստական հասարակության կառուցման գործում, հասարակու-
թյուն, որի կյանքի հիմնական օրենքը դարձավ ՍՍՀՄ նոր սահմանադրությունը։
Հայ ժողովուրդը քաղաքական ու աշխատանքային խանդավառության մթնոլոր-
տում ընդունեց Հայկական ՍՍՀ նոր սահմանադրությունը։*

*Մեր հանրապետությունը ժողովրդական տնտեսության զարգացման բարձր
ու դինամիկ տեմպերով նշանավորեց տասներորդ հնգամյակի տարիները։ Սո-
վետական Հայաստանը համամիութենական սոցիալիստական մրցությունում
տարած հաղթանակի համար չորս անգամ անընդմեջ արժանացավ ՍՄԿԿ Կենտ-
կոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փո-
խանցիկ կարմիր դրոշին։*

*Հայրենիքի բարձր պարգևով ոգևորված, հանրապետության աշխատավոր-
ները իրենց ուժերը, գիտելիքներն ու փորձը ներդնում են տասներորդ հնգամ-
յակի հաջող ավարտման, անբարենպաստ եղանակի հարուցած հետևանքների
հաղթահարման, տնտեսության ու մշակույթի ոլորտում նոր բնագծերի նվաճ-*

ման գործում: Այժմ նրանք լի են վճռականությամբ՝ հոբելյանական 1980 թվականը նշանավորելու հարվածային աշխատանքով:

Հանրապետության աշխատավորները ՍՄԿԿ XXVI համագումարը, ազգային վերածննության հոբելյանը դիմավորում են նյութական ու հոգևոր ուժերի ծաղկման պայմաններում և շարունակում են նվաճել նորանոր բարձունքներ արդի առաջընթացի ոլորտներում: Սովետական Հայաստանը Վ. Ի. Լենինի, Մեծ Հոկտեմբերի գաղափարների, ՍՄԿԿ-ի և նրա մարտական ջոկատի՝ Հայաստանի կոմկուսի հեղափոխական վերափոխիչ գործունեության հաղթանակի, մեր երկրի բոլոր ժողովուրդների անխախտ բարեկամության, նրանց եղբայրական համագործակցության վառ օրինակ է:

Հանրապետության հոբելյանի և ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստության ընթացքում նոր թափ են ստանում մասսաների հասարակական ակտիվությունն ու աշխատանքային նախաձեռնությունը, որոնք նպատակամղված են ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտկոմի պլենումների որոշումների, կուսակցական կարևորագույն փաստաթղթերի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթների ու աշխատությունների բովանդակած դրույթների ու հետևությունների իրականացմանը, ընթացիկ տարվա և տասներորդ հնգամյակի պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարմանն ու գերակատարմանը, տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում ժողովրդական տնտեսության կայուն աշխատանքի ապահովմանը:

Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները խորապես գիտակցում են, որ հանրապետության հոբելյանն ըստ արժանվույն նշելու լավագույն միջոցը ուշադրության ու ջանքերի կենտրոնացումն է տնտեսության ու մշակույթի հերթական խնդիրների լուծման վրա: Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության ստեղծագործական ակտիվությունը մարմնավորվել է հանրապետության աշխատավորների 1980 թվականի սոցիալիստական բարձր պարտավորություններում: Հաջողությամբ ծավալվում և հիանալի արդյունքներ է տալիս հոբելյանական աշխատանքային հերթափոխը:

Կուսակցական կազմակերպությունների խնդիրը նախ և առաջ այն է, որ ըստ ամենայնի խրախուսվի, համակողմանի ուղղություն ստանա մասսաների շարժումը, նրանց ոգևորությունը՝ հաջողությամբ պսակելու աշխատանքի արդյունավետության ու որակի համար մղվող պայքարը, հասնելու լավագույն ցուցանիշների, ամրապնդելու կարգապահությունը, բարձրացնելու պատասխանատվությունը հանձնարարված գործի հանդեպ: Այստեղ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հունիսյան պլենումում, հաջողությունը մեծ մասամբ պայմանավորված է սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպմամբ, այն բանով, որ սիստեմատիկաբար վերահսկվի նախատեսվածի կատարումը: Ընդ որում, հարկավոր է ելնել այն բանից, որ մրցությունը, տնտեսական պրակտիկայի վրա խորապես ներգործելու հետ մեկտեղ, հսկայական ազդեցություն է թողնում կոլեկտիվում ու հասարակության մեջ բարոյական մթնոլորտի ձևավորման վրա: Կարևոր է այսուհետ ևս խորացնել ու կատարելագործել կազմակերպական-տնտեսական գործունեության օրգանական փոխադարձ կապը գաղափարադաստիարակչական պրոբլեմների լուծման հետ, հասնել տնտեսության կուսակցական ղեկավարման մշտական բարելավմանը, ժողովրդատնտեսական պլանների կատարման ու գերակատարման համակողմանի գաղափարախոսական ապահովմանը:

Մեր հանրապետությունում հիանալի ինտերնացիոնալիստական ավանդույթ է դարձել սոցիալիստական մրցությունը եղբայրական հանրապետությունների՝ Վրաստանի, Ադրբեջանի և ՌՍՖՍՀ-ի Ռոստովի մարզի աշխատավորների հետ: Այդ մրցությունն առանձնակի թափ ու իմաստ է ձեռք բերում այս տարի, որը նշանավորվել է լենինյան փառապանծ հոբելյանով, ՍՄԿԿ XXVI համագումարի ակտիվ նախապատրաստությամբ, Անդրկովկասի ժողովուրդների հեղափոխական տարելիցների տոնակատարությամբ:

Սոցիալիստական մրցության ներգործունությունն ու լայն հրապարակայնու-



թյունը, նրա դաստիարակչական դերի բարձրացումը, արժեքավոր նախաձեռնությունների ժամանակին ու արդյունավետ խրախուսումը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի համար մասսայական շարժման աճը մեր աշխատավորների նոր նշանակալի հաղթանակների գրավականն են:

Հանրապետության 60-ամյակի նախապատրաստության ընթացքում կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքը, անցկացվելիք միջոցառումները պետք է սերտորեն փոխկապակցված լինեն և իրականացվեն միասնական հունով: Կուսակցության կյանքում կարևոր իրադարձություն է առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիան, որը, անտարակույս, կդառնա կոմունիստների, հանրապետության աշխատավորների ուժերի և մեծագործությունների իսկական ստուգատես: Դրա հետ մեկտեղ մենք պետք է պահանջկոտ, գործարար կերպով քննության առնենք մեր կոլեկտիվների, կազմակերպությունների աշխատանքը, ինքնաքննադատաբար գնահատենք ձեռք բերվածը, նշենք թերությունների վերացման կոնկրետ ուղիները:

Հոբելյանի նախապատրաստության ընթացքում լուրջ ու պատասխանատու խնդիրներ պետք է լուծվեն պրոպագանդայի և մասսայական-քաղաքական աշխատանքի ասպարեզում: Անհրաժեշտ է, որպեսզի կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները, բոլոր գաղափարախոսական օղակները ակտիվորեն կիրառեն և հարստացնեն կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի առկա փորձը, որ կուտակվել է Մեծ Հոկտեմբերի վաթսունամյակի, Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարությունների ընթացքում:

Խիստ կարևոր է, որպեսզի հոբելյանի առնչությամբ իրականացվող և իրականացվելիք պրոպագանդիստական, մասսայական-քաղաքական բոլոր միջոցառումները դառնան մեր ողջ քաղաքական-դաստիարակչական գործունեության բաղկացուցիչ մասը, օրգանապես շաղկապվեն այդ գործունեության կարևորագույն խնդիրների հետ՝ ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման պահանջներին համապատասխան: Մեր խնդիրն է՝ խորը և համակողմանի բացահայտել Մեծ Հոկտեմբերի համաշխարհային պատմական նշանակությունը, Վ. Ի. Լենինի ակնառու դերը, լենինյան գաղափարների կենարար ուժը հայ ժողովրդի սոցիալիստական վերածննության գործում, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների պատմական վերընթացում, լայնորեն ցույց տալ ՍՄԿԿ-ի, նրա մարտական ջոկատի՝ Հայաստանի կոմկուսի հեղափոխական վերափոխիչ գործունեությունը, սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքը լենինյան պատգամների կենսագործման ասպարեզում:

Նախապատրաստվելով Սովետական Հայաստանի 60-ամյակին, կուսակցական և սովետական կազմակերպությունները, արհմիություններն ու կոմերիտմիությունը մեծ ջանքեր են գործադրում աշխատավորների, երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության մարզում: Անխախտ բարեկամությունը ռուս ժողովրդի հետ, ժողովուրդների օր-օրի ամրապնդվող միասնությունը հայ ժողովրդի անգին սեփականությունն են, հանրապետության աշխատավորների գլխավոր պատմական նվաճումներից մեկը: Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության կենարար գաղափարներով է տոգորված մեր ողջ կյանքը: Աշխատավորների գիտակցության մեջ այդ վեհ գաղափարների հաստատումը եղել և մնում է հանրապետության կուսակցական կազմակերպությունների, բոլոր գաղափարախոսական օղակների կարևոր խնդիրներից մեկը: Հոբելյանի նախապատրաստությունը մեզ պարտավորեցնում է նոր աստիճանի բարձրացնել այդ աշխատանքը, հարստացնել ու բազմազան դարձնել հայրենասիրական ու ինտերնացիոնալ դաստիարակության մեթոդներն ու եղանակները: Միաժամանակ հարկավոր է այսուհետ ևս գաղափարախոսական գործունեության բոլոր միջոցներն օգտագործել բուրժուական պրոպագանդայի դեմ մղվող պայքարում, պայքար, որը պետք է մշտապես կրի հարձակողական բնույթ: Դրա բովանդակությունն ու իմաստը

դասակարգային դիրքերից բացահայտել հայ ժողովրդի պատմության, հեղափոխական պայքարի հիմնական իրադարձությունները, ցույց տալ այն մեծ դրական փոփոխությունները, որ հանրապետության աշխատավորների կյանքում տեղի են ունեցել սովետական իշխանության տարիներին, տպավորիչ ներկայացնել սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման դինամիկան, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքը, դրա սոցիալական նշանակալիությունը, պրոպագանդել կոմունիստական կուսակցության՝ որպես ամբողջ սովետական հասարակության քաղաքական ավանգարդի, ստեղծարար գործունեության ազնիվ նպատակներն ու սկզբունքները, մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության ու միասնության հզոր ուժը:

Համապարփակ է նշանավոր տարելիցի նախապատրաստության ծրագիրը: Այն աչքի է ընկնում հոբելյանական միջոցառումների հագեցվածությամբ ու բազմազանությամբ: Կանցկացվեն ինտերնացիոնալ բարեկամության մասսայական տոնահանդեսներ, հեղափոխության, Հայրենական պատերազմի ու աշխատանքի հերոսների մեծարման երեկոներ, ագիտարշավներ, սպորտային մրցումներ: Նախատեսվում է հոբելյանի նախօրեին հրավիրել գիտական նստաշրջաններ ու կոնֆերանսներ, ստեղծագործական միությունների միացյալ պլենում, կազմակերպել արվեստի փառատոներ, ներկայացումների, կինոնկարների ու հեռուստաֆիլմերի պրեմիերաներ, գեղարվեստական ցուցահանդեսներ:

Կուսակցական, հասարակական կազմակերպությունները կոչված են ապահովելու միջոցառումների կազմակերպական ու քաղաքական բարձր մակարդակը, ամբողջ նախապատրաստական աշխատանքին հաղորդելու կենդանի, իսկապես ստեղծագործական բնույթ: Մենք պետք է ընթերցողին, հանդիսատեսին, ունկնդրին ներկայանանք կոմունիստական գաղափարների վեհությամբ, մարդասիրությամբ տոգորված խոսք ու խորհրդով, ամեն կերպ ձգտենք, որ գաղափարական համոզվածությունը, հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, ընդհանուր գործի մեջ արժանի ավանդ մուծելու ձգտումը լիովին դառնան կյանքի սկզբունք, ակտիվորեն ձևավորեն աշխատավորների, երիտասարդության սոցիալական դեմքն ու դիրքորոշումը:

60-ամյա տարելիցին մեզ մոտեցնող յուրաքանչյուր նոր օրը նշանավորվում է հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու ժողովրդական մտավորականության ոգեշունչ ստեղծարար աշխատանքով: Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակը կտոնվի ՍՄԿԿ XXVI համագումարի նախաշեմին: Այդ մեծ իրադարձությունը կդառնա դեպի կոմունիստական ստեղծարար աշխատանքի բարձունքները սովետական ժողովրդին առաջնորդող պատմական ճանապարհի նոր խոշոր ուղենիշ: Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս և միահամուռ պաշտպանում են լենինյան կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի ներքին ու արտաքին քաղաքականությունը: Նրանք լի են վճռականությամբ՝ ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարները, Սովետական Հայաստանի ու հանրապետության կոմկուսի պանծալի հոբելյանը դիմավորելու ժողովրդական տնտեսության, գիտության ու մշակույթի զարգացման հետագա նոր հաջողություններով:

---



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄՏԱՎՈՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԴԵՐԸ

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ

*Դժվար է հաշտվել այն մտքի հետ, որ սա մեր սիրելի գրչակցի, գաղափարական զինակցի վերջին հոդվածն է: Դժվար է հավատալ, որ Միքայել Խորենի Իգիթխանյանը այլևս մեզ չի թղթակցելու: Դաժան մահը անսպասելի մեզանից խլեց կոմունիստական կուսակցության հավատարիմ զավակին, գաղափարախոսական ճակատի անխոնջ մարտիկին, գիտնական-հրապարակախոսին:*

*Միքայել Իգիթխանյանի պայծառ հիշատակը միշտ վառ կմնա նրա գրչակից ընկերների սրտերում:*

## 1.

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ դինամիկ զարգացման գործում մեծ է մտավորականության դերը: Կառավարման, գիտության, տեխնիկայի, ժողովրդական կրթության, առողջապահության, գրականության ու արվեստի ոլորտում, արդյունաբերության, գյուղատնտեսության, մշակույթի, գաղափարախոսական աշխատանքի բնագավառներում նրա ավանդը հզոր ազդեցություն ունի կոմունիստական շինարարության տեմպերն արագացնելու գործում:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում են գիտության ու մշակույթի հաջողություններով, արդի գիտատեխնիկական հեղափոխության ծավալման և դրա հասումները սոցիալիստական կարգի առավելությունների հետ միացնելու գործում՝ մեր մտավորականության բազմաթիվ ջոկատների ծանրակշիռ ներդրումով:

Ըստ արժանվույն գնահատելով հասարակության կյանքում մտավորականության դերն ու նշանակությունը, մարքսիստ-լենինյաններն այդ պրոցեսն ուսումնասիրում են ողջ սովետական հասարակության անցած ուղուց ո՛չ թե անջատ, այլ մեծ Հոկտեմբերով սկսված դարակազմիկ շարժման, այսինքն՝ կոմունիստական ֆորմացիայի օրինաչափությունների ազդեցության, բանվոր դասակարգի առաջատար դերի լույսի ներքո:

Նման մոտեցումն սկզբունքային նշանակություն ունի: Այն տեսական ու մեթոդաբանական ելակետ է սովետական մտավորականության զարգացման միտումների ըմբռնման, նրա հզոր ստեղծագործական կարողության համակողմանի բացահայտման ու արդյունավետ օգտագործման համար:

Մեր գաղափարական հակառակորդները ձգտում են գործն այնպես ներկայացնել, թե իբր արդի գիտատեխնիկական հեղափոխությունը համահարթում և ի չիք է դարձնում կապիտալիզմի և սոցիալիզմի սոցիալ-դասակարգային հակադրությունը, հանգեցնում ինչ-որ «միասնական արդյունաբերական հասա-

րակության» կազմավորման: Անտեսելով հասարակական կյանքի օբյեկտիվ պրոցեսները, բուրժուական գաղափարախոսները պնդում են, թե արդի աշխարհում բանվոր դասակարգն իբր սպառել է իր հեղափոխական հնարավորությունները, դադարում է լինել ինքնուրույն սոցիալական խումբ, տարրալուծվում է «միջին» խավի մեջ: Եվ այնուհետև, պատմական զարգացման ուղղությունը որոշում են ո՛չ թե նրա քաղաքական ու գաղափարախոսական դիրքերն ու պրակտիկ գործունեությունը, այլ անցյալ դարին հատուկ և այժմ անախրոնիզմ դարձած դասակարգային «նախապաշարմունքներից» զերծ «ընտրանու» մտավոր ջանքերը:

Նրանք պնդում են, թե բուրժուական և սոցիալիստական հասարակությունների մտավորականության միջև ոչ մի տարբերություն չկա, որ և՛ մեկում, և՛ մյուսում նրա դերը մեկն է՝ «հասարակությանը ծառայելը», որ նրա աշխարհըմբռնումը, ձգտումները, պահանջները միատեսակ են և թելադրվում են նրա զուտ մասնագիտական առանձնահատկություններով՝ կապված մտավոր աշխատանքի, «ամեն մի իշխանության» հանդեպ նրա մշտական օպոզիցիայի մեջ լինելու հետ և այլն: Միաժամանակ, բացահայտորեն աղավաղելով մտավորականության իրական վիճակը սոցիալիստական հասարակությունում, որն իբր թե զրկված է հոգևոր և ստեղծագործական ազատությունից, վառ գույներով են ներկայացնում նրա ճակատագիրն, այսպես ասած, «ազատ», կապիտալիստական աշխարհում:

Գիտատեխնիկական հեղափոխությունը ո՛չ միայն չի համահարթում երկու հասարակարգերի միջև եղած տարբերությունները, այլև լրիվին բացահայտում է դրանց հակադրությունը: Կապիտալիզմը սրում է սոցիալ-դասակարգային հակամարտությունները: Կապիտալի աշխարհում սոցիալապես միասնական մտավորականություն չկա, այն տրոհված է տարբեր խավերի: Սոցիալական ճգնաժամերը վատացնում են մտավորականության հիմնական զանգվածի կենսավիճակը, նրա շարքերում հետզհետե ավելի է ուժեղանում տեղաշարժը դեպի ձախ, հակաիմպերիալիստական պայքարի ճակատը, աճում է նրա համերաշխությունը բանվոր դասակարգի և ուրիշ առաջադեմ ուժերի հետ:

Սոցիալիզմի պայմաններում մտավորականության մասնագիտական գործունեությունը ներդաշնակվում է աշխատավոր դասակարգերի շահերին: Այդ միասնությունը խարսխված է բանվոր դասակարգի սոցիալիստական մղումների և կոմունիստական իդեալների հետ հասարակության բոլոր սոցիալական խմբերի ու խավերի արմատական կենսական շահերի ու հասարակական ձգտումների համընկնելու վրա: Այն տնտեսապես, գաղափարապես և կազմակերպչորեն ամրապնդվում է կոմունիստական կուսակցության մարքս-լենինյան քաղաքականությամբ ու ղեկավարությամբ: Կուսակցությունը ելնում է բոլոր սոցիալ-դասակարգային խմբերի ու խավերի կենսապայմաններում այդ ընդհանուրի, գլխավորի համակողմանի խորացման անհրաժեշտությունից, հաշվի առնելով նրանցից յուրաքանչյուրի աշխատանքի, կենցաղի, պահանջմունքների յուրահատկությունները:

«Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, որը միշտ կազմել է սոցիալիստական հասարակարգի հիմքը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— իր զարգացումն է գտել այդ դասակարգերի քաղաքական ու գաղափարական անխախտ միասնության մեջ մտավորականության հետ, որը վաղուց և հաստատորեն կանգնած է սոցիալիզմի դիրքերում» (Լենինյան կուրսով, հ. 5, էջ 94): Հասուն սոցիալիստական հասարակարգում արմատապես փոխվել է մտավորականության սոցիալական կերպարանքը, ասպարեզ են իջել նրա նոր սերունդները, որոնցից յուրաքանչյուրը կազմավորվել է բոլոր սոցիալիստական դասակարգերից, խմբերից ու խավերից, երկրի բոլոր ազգերից ու ազգություններից, իր կյանքի բոլոր պայմաններով, մտքով ու հոգով սերտաճել է ժողովրդի կյանքին, բաժանել նրա ճակատագիրը, ապրել և ապրում է նրա ձգտումներով ու հույսերով, ոգորվելով նորի, առաջավորի նկատմամբ նրա անասելի խոյանքով:

Դեռևս սովետական իշխանության արշալույսին Վ. Ի. Լենինը նկատել է, որ «...գիտության ներկայացուցիչների և բանվորների համագործակցությունը— միմիայն այսպիսի համագործակցությունն ի վիճակի կլինի ոչնչացնելու



թշվառության, հիվանդությունների, կեղտի ողջ ճնշումը... գիտության ներկայացուցիչների, պրոլետարիատի և տեխնիկայի միության դեմ չի դիմանա ոչ մի մութ ուժ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 512): Հայտնի է, թե նա ինչպիսի մեծ կարևորություն էր տալիս հին մասնագետների օգտագործմանը, սոցիալիզմի ոգով նրանց վերադաստիարակմանը, առաջավոր բանվորների շրջանից, պրոլետարական խավերից կառավարչական աշխատանքին ներգրավելուն և միաժամանակ արդի գիտության բոլոր հասումներին տիրապետած նոր, սոցիալիստական մտավորականության պլանաչափ և զանգվածային կազմավորմանը, երկրի սոցիալիստական վերափոխման գործում նրա դերին ու նշանակությանը:

Իրագործելով լենինյան պատգամները, մեր կուսակցությունը հետևողական պայքար է մղել ինչպես բանվոր դասակարգի կուլտուրական շինարարության բնագավառում աշխատավոր մտավորականության հետ դաշինքի ամրապնդման գործում նրա ղեկավար դերը նվազեցնելու օպորտունիստական, ռեֆորմիստական փորձերի, այնպես էլ մտավորականության հետ բուն բանվոր դասակարգի մերձեցման նշանակությունը թերագնահատելու հետ կապված աղանդավորական պատկերացումների դեմ: Սոցիալիստական շինարարության դժվարին պայմաններում բանվոր դասակարգի և մտավորականության միջև սեպ խրելու մեր թշնամիների ջանքերն ապարդյուն անցան: Այսօր առավել ևս անհիմն են սոցիալապես ու քաղաքականապես միասնական մեր հասարակությունում ֆիզիկական ու մտավոր աշխատանքի մարդկանց միջև ինչ-որ հակասություններ փնտրելու բուրժուական գաղափարախոսների փորձերը: «Ժողովրդի ծոցից դուրս եկավ նոր, սոցիալիստական մտավորականություն,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— որը հայրենիքը փառաբանեց գիտության ու տեխնիկայի, գրականության և արվեստի ակնառու նվաճումներով: Այն հանդիպումը, որի մասին երազում էին մարդկության լավագույն մտածողները, աշխատանքի և կուլտուրայի պատմական հանդիպումը, կայացավ: Մեր երկրի պատմության մեջ, ամբողջ համաշխարհային կուլտուրայի պատմության մեջ դա վիթխարի նշանակություն ունեցող շրջադարձ էր» (Լենինյան կուրսով, հ. 6, էջ 736):

Միայն բանվոր դասակարգի ղեկավարած լայն մասսաների պայքարի ու ստեղծագործ աշխատանքի հիման վրա հաստատվող ու զարգացող սոցիալիզմը կարող էր արմատապես փոխել մտավորականության կյանքի պայմանները, նրա գործունեության հասարակական բովանդակությունն ու սոցիալական իմաստը: Սոցիալիզմը գիտության, մշակույթի և աշխատանքի մարդկանց միությունը դարձրեց առաջընթացի հզոր ուժ, մտավորականի գիտելիքներն ու փորձը բուրժուազիայի շահագործման, առուծախի առարկայից, նրա տնտեսական ու սոցիալ-քաղաքական արտոնություններն ամրապնդելու միջոցից վերածեց մի սոցիալական ուժի, որը ծառայում է աշխատանքն ազատագրելու, գիտելիքներն ու մշակույթը ժողովրդի սեփականությունը դարձնելու, հասարակության կյանքում դեմոկրատիզմի վեհ մարդասիրական գաղափարները հաստատելու գործին, յուրաքանչյուր աշխատավորի, այդ թվում նաև մտավորականի, ինքնահաստատմանն ու ազատ զարգացմանը:

Սոցիալիզմը հաղթահարում է բուրժուական հասարակությունում մտավորականության տարբեր խավերի հասարակական-քաղաքական դիրքորոշման ու մասնագիտական գործունեության սոցիալական տրոհվածությունն ու հաճախ հակադիր դասակարգային կողմնորոշումը: Ներքուստ միասնական սոցիալական դերում, որ հատուկ է սովետական ողջ մտավորականությանը, համընկնում և միմյանց փոխլրացնում են ինչպես նրա մասնագիտական, այնպես էլ հասարակական-քաղաքական գործունեությունը, որն օբյեկտիվորեն մեծացնում է դրանցից յուրաքանչյուրի կարողությունը:

Կապիտալիզմի պայմաններում մտավորականության գործունեությունը ո՛չ միայն չի նպաստում ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև տիրող տնտեսական հարաբերությունների հետևանքով վերարտադրվող ու ամրապնդվող հակասության վերացմանը, այլև օբյեկտիվորեն սրում է այն: Եվ միայն սոցիալիստական հասարակական հարաբերությունների, ամենից առաջ նման հակասությունը բացառող տնտեսական հարաբերությունների հիման վրա է

յուրաքանչյուր անդամի՝ որպես համակողմանիորեն զարգացած, ներդաշնակ
անհատի ձևավորման խնդիրը: Սոցիալապես միատարր հասարակությունում
այդ պրոցեսի ավելի ինտենսիվ ընթացքի համար ավելի նպաստավոր օբյեկ-
տիվ հնարավորություններ են ստեղծվում:

Համակողմանի զարգացած, ներդաշնակ անհատի ձևավորման հեռանկար-
ներն ու հնարավորությունները մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդ-
կանց միջև դուրս են գալիս սոցիալական տարբերությունների հաղթահարման
ժամանակագրական շրջանակների սահմաններից, չնայած այդ պրոցեսը, ինչ-
պես արդեն ասվեց, կոմունիզմի իդեալի մարմնավորման գործում բացառիկ
կարևոր դեր ունի: Իսկ համակողմանի զարգացած, ներդաշնակ անհատի ձևա-
վորումն առավել ինտենսիվորեն իրականանում է հասուն սոցիալիզմի փուլում:

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև օրգանական կապի ստեղծումը,
յուրաքանչյուր մարդու կենսագործունեությունում աշխատանքի այդ տեսակ-
ների մարմնավորումն անհատի ներդաշնակ զարգացման պարտադիր պայմանն
ու հիմքն են: Բայց սա միայն հիմք է, որը չի կարող «սպառել», ինքնաբերա-
բար կանխորոշել մարդու մտավոր, հոգևոր-բարոյական և հոգեբանական հի-
մունքների բոլոր դրսևորումների ներդաշնակությունն ու ներքին ամբողջակա-
նությունը: Նման ներդաշնակության հասնելը պայմանավորված է սոցիալա-
կան ու կուլտուրական գործոնների չափազանց լայն շրջանակի ազդեցությամբ:
Այն առնչվում է համապատասխան միջավայրի ներգործության, յուրաքան-
չյուր անհատի ունակությունների բացահայտման, զարգացման ու իրականաց-
ման պայմանների կատարելագործման հետ, կոլեկտիվիստական հարաբերու-
թյունների ու արժույթների հասունության, հասարակական ու անհատական
պահանջարկների բարձր մակարդակի հետ և այլն:

Այդ իսկ պատճառով միակողմանի են թվում օրինակների դումարի կամ թե,
ասենք, ֆիզիկական աշխատանքը մտավորի հետ զուգակցող («ֆիզիկական
աշխատանքի ինտելեկտուալացում») բանվորների խմբի կամ մտավոր աշխա-
տանքը ֆիզիկականի հետ զուգակցող («մտավոր աշխատանքի տեխնիկացում»),
մտավորականության որոշակի խմբի մասին վիճակագրական տվյալների հի-
ման վրա տվյալ բնագավառի անհատների «համակողմանի», իսկ առավել ևս
«ներդաշնակ» զարգացման վերաբերյալ չկշռադատված հետևություններ անե-
լու փորձերը: Եվ ո՛չ թե այն պատճառով, որ այդ պրոցեսները նշանակություն
չունեն նման զարգացման համար, այլև, որ միայն դրանց հաշվառումը ամե-
նևին էլ բավարար չէ նման հետևությունների համար: Անհատի հոգևոր հարս-
տությունն ու բարոյական հասունությունը «ինքնաբերաբար» չի բխում նրա
աշխատանքի բովանդակության ու բնույթի մեջ կատարված պրոգրեսիվ տեղա-
շարժերից, այլ ենթադրում է նաև սոցիալիստական դեմոկրատիայի, կոլեկտի-
վիստական հարաբերությունների հիմքում ընկած գաղափարաբարոյական,
դաստիարակչական կարողությունների առավել լրիվ իրացում, գաղափարախո-
սական աշխատանքի որակական բարելավում, մի խոսքով՝ անհատի կոմու-
նիստական հատկանիշների զարգացման վրա ազդող ուժերի ու գործոնների
լայն միագումարի կոմպլեքս գործադրում:

Այս ամենում մեծ է նաև սովետական մտավորականության դերը: Դա
պայմանավորված է այն աճող նշանակությամբ, որ հասուն սոցիալիզմի փու-
լում ունեն գիտության ու տեխնիկայի զարգացումը և դրանց հասումների ներ-
դրումը նյութական արտադրության, հասարակական կյանքի բոլոր ոլորտնե-
րում, կառավարման կատարելագործումը, աճող սերնդի կրթության, ուսուց-
ման ու դաստիարակության գործը, ժողովրդական առողջապահության բարե-
լավումը, գրականության ու արվեստի զարգացումը:

Դրանով իսկ մտավորականության իրոք մարդասիրական սոցիալական
պարտականության կատարումը մի կողմից, նրա կենսագործունեության օբյեկ-
տիվ պայմանների բարելավման, իսկ մյուս կողմից, յուրաքանչյուր սովետա-
կան մտավորականի մասնագիտական ու գաղափարական հասունության աճի,
ժողովրդի առջև իր պարտքն ու պատասխանատվությունը խորապես գիտակ-
ցելու արդյունք է:

---



# ՖԻՆԱՆՍՆԵՐԸ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

Գ. Ա. ԶԱՆՈՅԱՆ
ՀՍՍՀ ֆինանսների մինիստր

Մեր ԵՐԿՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ բոլոր փուլերում կոմունիստա-
կան կուսակցությունը և սովետական կառավարությունը
մեծ ուշադրություն են նվիրում ժողովրդական տնտեսության պլանային ղեկա-
վարման, կառավարման տնտեսական մեխանիզմի կատարելագործման հար-
ցերին:

Կուսակցության XXV համագումարի որոշումները լուրջ խթան հանդիսա-
ցան ինչպես էկոնոմիկայի կառավարման սիստեմների ձևավորման, այնպես
էլ տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման համար:

Ժամանակակից պայմաններում էկոնոմիկայի պլանային ղեկավարման
առավել արդյունավետ ու ռացիոնալ մեթոդների և ձևերի մշտական կատարե-
լագործումը օբյեկտիվ անհրաժեշտություն է: Այդ են վկայում անցած երկու
տասնամյակներին էկոնոմիկայում կատարված փոփոխությունները և ինտեն-
սիվ ընդլայնված վերարտադրությանն անցնելը: Հարկ է նկատել, որ գործող
տնտեսական մեխանիզմը այլևս չի բավարարում երկրի անընդհատ զարգացող
տնտեսության պահանջները: Այսպես, վերջին տարիներին նկատվում է տըն-
տեսական զարգացման տեմպերի մի փոքր դանդաղում, անավարտ շինարարու-
թյան ծավալների շարունակվող աճ և այլն:

Պլանավորման և տնտեսավարման շատ ցուցանիշներ ու լծակներ ուղղված
էին արտադրության միայն քանակական աճին, առանց լիովին հաշվի առնելու
տնտեսական գործունեության ինտենսիվ, որակական կողմերը: Զգալիորեն նսե-
մացվել էր աշխատանքի վերջնական արդյունքը բնութագրող այնպիսի կարևոր
ցուցանիշների դերը, ինչպիսիք են՝ ապրանքների առաքումը սպառողներին
ըստ կնքված պայմանագրերի, ժամկետների և տեսականու, կամ պատրաստի
օբյեկտների և արտադրական հզորությունների ժամանակին գործարկումը, բա-
ցակայում էին պլանային ռեզերվները: Այս ամենը խոչընդոտում էր տնտհաշ-
վարկի, խրախուսման և նյութական պատասխանատվության համակարգի ար-
դյունավետ կիրառմանը:

Տնտհաշվարկային հարաբերությունների էությունը դրսևորվում է պլանա-
յին ղեկավարման պրոցեսում, որտեղ հարկ է արմատավորել ձեռնարկություն-
ների տնտեսական ինքնուրույնության հետ կենտրոնացված պլանային ղեկա-
վարման լավագույն զուգակցումն ապահովող տնտեսավարման ձևերն ու մե-
թոդները:

Պլանավորման կատարելագործումը, երկարաժամկետ տնտեսական
նորմատիվների բազայի վրա հնգամյա պլանի վերածումը տնտեսական և սո-
ցիալական զարգացման պլանի հիմնական ձևի, մեծ հնարավորություն է ընձե-
ռում արտադրության բոլոր ճյուղերի ձեռնարկությունների և միավորումների

ու կոլեկտիվների նախաձեռնություն հանդես բերել ներտնտեսական ռեզերվների օգտագործման հարցերում:

Տնտհաշվարկային հարաբերությունները զարգանում են համակողմանիորեն: Լրիվ տնտհաշվարկի սկզբունքները ձեռնարկություններին տնտեսապես շահագրգռում են, նախ՝ ներտնտեսական ռեզերվները շրջանառության մեջ ներգրավելու հիման վրա ընդունել ավելի բարձր, լարված պլաններ, ապա ներդնել գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները և, վերջապես, պլանավորված տեսականու սահմաններում, բարձրացնել արտադրանքի որակը: Լրիվ տնտհաշվարկը կառավարման բազմաստիճան մեթոդ է: Այն շոշափում է ճյուղի բոլոր օղակների շահերը: Այդ պատճառով էլ տնտհաշվարկային շահերը և խթանները ըստ էության պետք է ընդգրկեն ճյուղային կառավարման բոլոր օղակները:

Պրակտիկայում, տնտհաշվարկի սկզբունքների ոչ ճիշտ կիրառման հետևանքով և մի շարք այլ պատճառներով, առանձին տնտեսավարներ, օգտվելով տնտեսական մեխանիզմում գոյություն ունեցող սողանցքերից, աչքաթող անելով ռեսուրսների արդյունավետ օգտագործման, սպառողների նկատմամբ պարտավորությունների լրիվ կատարման հարցերը, համարվում են «առաջավորներ»: Վերջին տարիներին երկրում իրականացված մի շարք միջոցառումների ու դրանց միջոցով կուտակված փորձի մանրազնին վերլուծության հիման վրա կուսակցությունը և կառավարությունը որոշեցին տնտեսական մեխանիզմի կատարելագործման հիմնական, գլխավոր ուղղությունները: Կուսակցության XXV համագումարի դիրեկտիվների հիման վրա մշակվել ու ընդունվել են ՍՄԿԿ Կենտկոմի «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին» և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թվականի հուլիսի 12-ի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշումները:

Այս փաստաթղթերը պլանային ղեկավարման սովետական սիստեմի կատարելագործման նոր, կարևոր փուլ են: Դրանցում տրված է էկոնոմիկայի կառավարման բարելավման կոմպլեքսային ծրագիր և նշված են կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման, տնտհաշվարկի զարգացման, տնտեսական լծակների ու խթանների ներգործությունն ուժեղացնելու կոնկրետ ուղիները:

Դրանց վերջնական նպատակն է կառավարման ամբողջ գործունեությունը նպատակամղել ստեղծված տնտեսական պոտենցիալի, նյութական, աշխատանքային, ֆինանսական ռեսուրսների առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործմանը և այդ ճանապարհով հասարակական ու անձնական պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը: Հենց այս նպատակով էլ տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին որոշումներում կանխանշված են պլանային աշխատանքի բարելավման և տնտեսական խթանման լծակների ներգործության բարձրացման միջոցառումները: Այդ որոշումների կարևոր առանձնահատկությունը տնտեսական մեխանիզմի առանձին տարրերի կատարելագործման նկատմամբ կոմպլեքսային մոտեցումն է: Դրանցում մշակված են երկարաժամկետ, միջժամկետային և ընթացիկ պլանների կիրառման, հաշվեկշռվածության ու կայունացման միջոցառումներ: Նորովի են լուծվել տնտհաշվարկային հարաբերությունների հետագա զարգացման հարցերը, բարձրացված է տնտեսական խթանման լծակների դերը: Տնտեսական խրախուսման ամբողջ համակարգը հիմնված է լինելու հնգամյա պլանի ցուցանիշների և տնտեսական կայուն նորմատիվների վրա: Ընդ որում, նախատեսվում է միավորումների և ձեռնարկությունների տնտեսական գործու-



նեության վերջնական արդյունքների բարելավման հետ միասին դրանց տրամադրության տակ մնացող օգուտներից հատկացումների չափի երաշխավորված աճ: Պետական բյուջեի եկամուտների միաժամանակյա աճը ամուր հիմք կստեղծի հասնելու յուրաքանչյուր աշխատողի, աշխատավորական կոլեկտիվների և ամբողջ հասարակության տնտեսական շահերի միասնության:

Միաժամանակ ՍՍՀՄ նոր սահմանադրությամբ նախատեսված՝ աշխատանքային կոլեկտիվների գործունեության դեմոկրատացումը, ինչպես նաև տնտեսական ղեկավարման հարցերում տեղական իշխանությունների իրավունքների ընդլայնումը զգալիորեն կնպաստեն տնտեսական մեխանիզմի արդյունավետ կիրառմանը:

Պլանային աշխատանքի որակի բարելավումը, գիտական մակարդակի բարձրացումը որոշակիորեն նպաստում են էկոնոմիկայի զարգացմանը, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը: Պլանի կազմումը և կատարումը պետք է դիտել ոչ թե մեկուսացված, այլ որպես սոցիալիստական տնտեսավարման մեխանիզմի միասնական, կոմպլեքս պրոցես: Ինքնին վերցրած պլանը, առանց դրա իրականացման ձևերի ու մեթոդների, չի կարող լինել կառավարման արդյունավետ գործիք: Պլանի կատարման մեխանիզմի մեջ մտնում են կառավարման կազմակերպական ձևերը, կառավարման տարբեր մակարդակներում իրավունքների ու պատասխանատվության հարաբերությունները, տնտեսական խրախուսման և լծակների համակարգը, տնտեսավարման իրավական ռեժիմը, աշխատավորների նախաձեռնության զարգացման ձևերն ու մեթոդները և սոցիալիստական մրցության կազմակերպումը: Այս բոլոր ձևերն ու մեթոդները պլանավորման հետ կազմում են տնտեսական մեխանիզմի բովանդակությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված տնտեսական մեխանիզմի կատարելագործման միջոցառումները հիմնականում բխում են մեր պրակտիկայում գործող տնտեսավարման մեթոդներից: Թերևս այդ պատճառով որոշման հիմքում դրված են ինչպես այդ մեթոդների հետագա զարգացման, այնպես էլ մի շարք հարցերի սկզբունքային, նոր լուծման միջոցառումներ:

Պլանային աշխատանքի բարելավումը պետք է ապահովել ժողովրդատնտեսական վերջնական արդյունքի հասնելու առավել արդյունավետ ուղիների ճիշտ ընտրությամբ, հեռանկարային, հնգամյա և ընթացիկ պլանների ռացիոնալ զուգակցմամբ, ճյուղային ու տերիտորիալ պլանավորմամբ, միջճյուղային և ներճյուղային համամասնությունների կատարելագործմամբ, էկոնոմիկայի հաշվեկշռված զարգացման համար անհրաժեշտ նյութական ու ֆինանսական ռեզերվների ստեղծմամբ:

Ձեռնարկությունների տնտեսական գործունեության կազմակերպման ու կառավարման գլխավոր ձևը դառնում է հնգամյա պլանը (ըստ տարիների բաշխումով): Սկզբունքորեն կարևորը և նորն այն է, որ տնտեսական կառավարման բոլոր մակարդակներում հնգամյակի սկզբից սկսած պլանի կատարման գնահատականը տրվելու է աճողական արդյունքներով: Հնգամյա պլանը պետք է մշակվի նյութական, աշխատանքային և ֆինանսական հաշվեկշիռների լայն համակարգի հիման վրա, տնտեսագիտական և ինժեներական հաշվարկներով, ռեսուրսների օգտագործման առաջավոր նորմատիվներով:

Արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման նպատակով մինիստրությունների և գերատեսչությունների համար սահմանվող պլանային ցուցանիշներում կատարվում են զգալի փոփոխություններ: Արտադրանքի տեսականու ընդլայնման հետ մեկտեղ առաքման պարտականությունների կատարման գործում բարձրացվում է ձեռնարկությունների պատասխանատվությունը, ըստ նախօրոք կնքված պայմանագրերի: Արտադրության զարգացման տեմպերի պլանավորման մեջ իրագործվում է սկզբունքային փոփոխություն, սահմանվում է ըստ մաքուր արտադրանքի պլանավորման ցուցանիշ, որն առավել ճիշտ է բնութագրում արտադրական կոլեկտիվների աշխատանքի արդյունքը և նրանց իրական ներդրումը երկրի ազգային եկամտի ավե-

լացման գործում։ Պլանային ցուցանիշների համակարգում զգալիորեն բարձրացվում է երկարաժամկետ տնտեսական նորմատիվների կիրառումը։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված ժողովրդական տնտեսության պլանավորումը կատարելագործելու միջոցառումները ընդգրկում են էկոնոմիկայի կառավարման բոլոր բնագավառները, այդ թվում՝ նաև այնպիսի կարևոր բնագավառ, ինչպիսին են՝ ֆինանսները։

Հայտնի է, որ սովետական ֆինանսները, տնտեսական մյուս լծակների հետ մեկտեղ, նկատելի դեր ունեն էկոնոմիկայի պլանային կառավարման պրոցեսում. դրանք ակտիվորեն նպաստում են արտադրության աճը խթանելուն, ինչպես նաև նյութական, աշխատանքային ու դրամական միջոցների ռացիոնալ օգտագործման նկատմամբ անհրաժեշտ հսկողություն իրականացնելուն։

Ֆինանսական պլանավորումը երկրի սոցիալական ու տնտեսական զարգացման պլանի բաղկացուցիչ մասն է։ Որքան լրիվ ու ռեալ են որոշված երկրի ֆինանսական ռեսուրսները, որքան հաջող են դրանք հավաքագրվում և որքան լրիվ ու նպատակային ձևով են ուղղվում տնտեսական ու սոցիալական զարգացման լայն ծրագրի կենսագործմանը, այնքան հաջողությամբ է իրականացվում այդ ծրագիրը։

Հանդիսանալով էկոնոմիկայի պլանային կառավարման կարևոր գործոն, ֆինանսական մեխանիզմը կարող է առավել մեծ չափով ներգործել ներտընտեսական ռեզերվների մոբիլիզացման վրա, տնտեսական ղեկավարներին կողմնորոշել արտադրանքի վերջնական արդյունքներին հասնելու ուղիների ու ձևերի և նյութական ու ֆինանսական միջոցների ավելի ռացիոնալ օգտագործմանը։ Այս պատճառով կուտակցության և կառավարության որոշման մեջ մեծ տեղ է հատկացված ֆինանսական ռեսուրսների, շահույթի բաշխման կարգի, բյուջեի վճարումների և տնտեսական խթանման ֆոնդերի ստեղծման ու օգտագործման պլանավորման բարելավմանը։ Դրանց հիմնական նպատակը ֆինանսական քաղաքականության ուժեղացումն է՝ տնտեսական ղեկավարների իրավունքների միաժամանակյա ընդլայնմամբ, որը հնարավորություն կընձեռի բարձրացնելու վերջիններիս տնտեսական շահագրգռվածությունը արտադրության բարձր ցուցանիշների հասնելու համար։

Բարձրացվում է պետության հավաքական ֆինանսական հաշվեկշռի դերը։ Տասնմեկերորդ հնգամյակից սկսած այն ներառվում է երկրի տնտեսական և սոցիալական զարգացման հնգամյա պլանում։ Նրանում իր արտահայտությունը կստանա պետության ֆինանսական ծրագիրը՝ պլանավորվող ժամանակահատվածում ըստ տարիների, ֆինանսական հիմնական միջոցների ձևավորման աղբյուրների, օգտագործման ուղղությունների և անպայման ըստ ֆինանսական ռեզերվների՝ ինչպես տնտեսական ու սոցիալական զարգացման պլանի մյուս բաղկացուցիչ մասերում։

Երկրի ֆինանսական ռեսուրսների պլանավորման այս կարգը կապահովի նյութական և արժեքային համամասնությունների փոխադարձ սերտ կապը և կբարձրացնի հնգամյա պլանի հիմնավորվածությունը։

Ֆինանսական ռեսուրսների ընդհանուր չափը և դրանց օգտագործման ուղղություններն ավելի ճիշտ որոշելու համար առաջիկա հնգամյակում պետական բյուջեի եկամուտներն ու ծախսերը կազմվելու են հավաքական հաշվարկներով՝ ըստ հիմնական ցուցանիշների և տարիների։ Միաժամանակ այդ նույն սկզբունքով կազմվելու են երկարատև ու կարճատև վարկերի, ինչպես նաև բնակչության եկամուտների ու ծախսերի հաշվեկշիռները։ Այս ամենն իրենց հերթին կնպաստեն հեռանկարային ֆինանսական պլանի որակական մակարդակի բարձրացմանը։

Հնգամյա պլանի ու պլանավորման մեջ երկարաժամկետ տնտեսական նորմատիվների նշանակության կարևորությունն անհրաժեշտ է դարձնում կազմել մինիստրությունների, արտադրական միավորումների և ձեռնարկությունների համար հնգամյա ֆինանսական պլաններ։

Երկրի ֆինանսական պլանավորման աշխատանքի պրակտիկայում նման պլաններ կազմվելու են առաջին անգամ։ Դրանց նպատակը ճյուղերի և միավորումների ֆինանսական պլանավորման որակի բարձրացումն է, որը միա-



ժամանակ պայմաններ կստեղծի երկարաժամկետ տնտեսական նորմատիվների լայն կիրառման, այդ թվում՝ շահույթի բաշխման, գիտության ու տեխնիկայի միասնական ֆոնդի և տնտեսական խթանման ֆոնդերի նորմատիվների համար։

Հեռանկարային ֆինանսական պլանավորման կատարելագործման նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը, որտեղ հաշվի են առնվում ժողովրդական տնտեսության ֆինանսական հարաբերությունների բոլոր կողմերը, անհրաժեշտ պայմաններ է ստեղծում երկրի ֆինանսական պլանի հիմնավորման և հնգամյա պլանի բոլոր ցուցանիշների հետ նրա փոխադարձ սերտ կապի ապահովման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի վերոհիշյալ որոշմամբ նախատեսվում է անցնել շահույթի բաշխման նորմատիվային մեթոդի։ Այդ նշանակում է, որ սկսած տասնմեկերորդ հնգամյակից արդյունաբերական մինիստրություններում՝ ըստ պատրաստականության աստիճանի, պետք է սահմանվի նրանց տրամադրության տակ մնացող շահույթի մասհանման կայուն նորմատիվ՝ ըստ տարիների։

Շահույթի այդ մասը կօգտագործվի կապիտալ ներդրումների ֆինանսավորման, բանկային վարկերի մարման, դրանց տոկոսների վճարման, շրջանառու միջոցների աճի ապահովման, գիտության ու տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդի և տնտեսական խթանման ֆոնդերի գոյացման, ինչպես նաև ճյուղի զարգացման այլ պլանային ծախսումների համար։

Մինիստրություններին թույլատրված է, ելնելով իրենց տրամադրության տակ մնացող շահույթի գումարից և հաշվի առնելով արտադրության առանձնահատկություններն ու շահութաբերության մակարդակը, արդյունաբերական ու արտադրական միավորումների և խոշոր ձեռնարկությունների համար սահմանել շահույթից մասհանումների համապատասխան նորմատիվներ։ Աշխատանքի անհրաժեշտ պայմաններ ստեղծելու և փորձ կուտակելու նպատակով շահույթից մասհանումների նորմատիվ պետք է սահմանվի բոլոր արտադրական միավորումների և ձեռնարկությունների համար։

Շահույթի բաշխման նորմատիվային մեթոդին անցնելն ամրապնդում է մինիստրությունների, միավորումների, ձեռնարկությունների տրամադրության տակ մնացող ռեսուրսների և նրանց աշխատանքի արդյունքների միջև փոխադարձ կապն ու կախվածությունը։ Սա միանգամայն լրիվ համապատասխանում է տնտհաշվարկի սկզբունքներին։ Սակայն կարևոր է բարձրացնել մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների ո՛չ միայն շահագրգռվածությունը, այլ նաև պատասխանատվությունը իրենց գործունեության արդյունքների բարելավման, պլանային առաջադրանքների և պետական բյուջեի նկատմամբ պարտականությունների կատարման, տնտեսական և սոցիալական զարգացման պլանով նախատեսված միջոցառումների անխափան ֆինանսավորման համար բյուջեի եկամուտների կայուն մուծումներն ապահովելու գործում։

Այդ նպատակով հնգամյա պլաններում նախատեսվում է նորմատիվների հետ մեկտեղ հաստատել նաև բյուջե մասհանվող շահույթի բացարձակ գումարը։

Հնգամյակի որևէ տարում շահույթի հաստատված պլանը չկատարելու դեպքում բյուջեի համար հնգամյա պլանով այդ տարվա նախատեսված վճարումները լրիվ գումարով մուծվում են բյուջե՝ ի հաշիվ մինիստրության տրամադրության տակ մնացող շահույթի համապատասխան նվազեցման։ Պետական բյուջեի հետ փոխհարաբերությունների այս կարգը բոլոր օղակների տընտեսական ղեկավարներից պահանջում է ավելի բարձր մակարդակի տնտեսավարություն, պլանային և ֆինանսական աշխատանքի կազմակերպման բարելավում, բոլոր տնտեսական ծառայությունների ակտիվ գործունեություն, արտադրության ծախսերի կրճատման, անարտադրողական ծախսերի և կորուստների վերացման հաշվին ներտնտեսական լրացուցիչ ռեսուրսներ ստեղծելու նպատակով օպերատիվ վճիռներ կայացնելու կարողություն։

Շահույթի չափը պլանավորելիս կարևոր է նաև տնտեսական ներգործման լծակների կիրառումը։ Այդ նպատակով գերպլանային շահույթի բաշխման

ընագավառում սահմանված է նոր, խթանիչ կարգ, որի իրագործումը ստիպում է մինիստրություններին և գերատեսչություններին ընդունել մաքսիմում ռեալ պլաններ: Այսպես՝ շահույթի պլանը մինչև 3 տոկոսով գերակատարող միավորումները, ձեռնարկությունները և կազմակերպությունները բյուջե վճարում են գերպլանային շահույթի 50 տոկոսը միայն, իսկ 3 տոկոսից բարձր գերակատարողները՝ 3 տոկոսին գերազանցող գումարի 75 տոկոսը: Այս կարգը սահմանափակում է ձեռնարկության՝ շահույթի ցածր պլան ընդունելու ձգտումը:

Շահույթի բաշխման նոր կարգին անցնելը, սակայն, չի նշանակում, որ արդյունաբերության ճյուղերի զարգացման համար անհրաժեշտ կապիտալ ներդրումների ծավալը որոշվելու է միայն այդ ճյուղում գոյացած շահույթի կամ այլ սեփական եկամուտների հաշվին: Այդպիսի մոտեցումը կհակասեր սոցիալիստական ընդլայնված վերարտադրության սկզբունքներին և կդժվարացներ անհրաժեշտության դեպքում առանձին արտադրությունների ու ճյուղերի ավելի արագ զարգացման հնարավորությունները:

Սոցիալիստական համակարգի տնտեսավարման առավելություններից մեկը հենց միջոցների կենտրոնացված պլանային վերաբաշխման հնարավորությունն է: Այդ պատճառով կառավարման տնտհաշվարկային մեթոդների պայմաններում էլ կապիտալ ներդրումների համար անհրաժեշտ սեփական միջոցների անբավարարության դեպքում մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների հնգամյա պլաններում նախատեսվում է բանկային վարկի օգտագործում, իսկ անհրաժեշտության դեպքում՝ նաև պետական բյուջեի միջոցներ:

Կուսակցության առաջադրած տնտեսական և սոցիալական խնդիրների լուծման հաջողությունը շատ բանով պայմանավորված է կապիտալ շինարարությունում տիրող գործերի վիճակով: Երկրում, հիրավի, հսկայական ծավալներով իրականացվում են կապիտալ ներդրումներ: Ամեն տարի գործարկվում են նոր ձեռնարկություններ և արտադրական հզորություններ, բարձր տեմպերով նորոգվում են հիմնական ֆոնդերը և այս ամենի շնորհիվ ստեղծվել է արտադրական հզոր պոտենցիալ: Այժմ ժողովրդական տնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումների ծավալը հասնում է 116 մլրդ ռուբլու, որը 1965 թվականի մակարդակը գերազանցում է 2,4 անգամ: Այդուհանդերձ ներդրվող հսկայական ռեսուրսները դեռևս օգտագործվում են ոչ բավարար արդյունավետ: Մինիստրությունների և գերատեսչությունների կողմից միջոցները փոշիացվում են բազմաթիվ օբյեկտների միջև, շինարարությունն իրականացվում է դանդաղ տեմպերով, որի հետևանքով ձգձգվում են արտադրական ֆոնդերի և օբյեկտների գործարկման պլանային ժամկետները, հետզհետե ավելանում են անավարտ շինարարության ծավալները, մեծանում չտեղադրված սարքավորումների քանակը: Այսպես, Հայկական ՍՍՀ-ում այժմ կապիտալ ներդրումների ծավալը կազմում է 1.145 մլն ռուբլի, իսկ անավարտ շինարարության ծավալը՝ 1.223 մլն կամ ընդհանուր ծավալի 123,7 տոկոսը:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թվականի հուլիսի 12-ի որոշմամբ մշակված է միջոցառումների մի ամբողջ համակարգ, որի իրականացումը ըստ էության պետք է զգալիորեն բարելավի ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղի ղեկավարումը: Հատուկ ուշադրություն է հատկացվում, օրինակ, պլանավորման բարելավմանը և կապիտալ ներդրումների ծավալների, նյութատեխնիկական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների, ինչպես նաև շինարարական-մոնտաժային կազմակերպությունների հզորությունների միջև հաշվեկշռվածության բարձրացմանը:

Շինարարության մեջ պլանի կատարման և աշխատանքի արդյունքի գնահատման գլխավոր ցուցանիշը դառնում է արտադրական հզորությունների և օբյեկտների գործարկումը: Այդ նպատակով պլանավորման մեջ մտցվում է նոր ցուցանիշ՝ ապրանքային շինարարական արտադրանք: Շինարարական արտադրության պլանավորման վերոհիշյալ նպատակների իրականացմանը զգալիորեն պետք է նպաստի որոշմամբ նախատեսված՝ տնտեսական խթանման համակարգի վերակառուցումը:



Ավելացվում են արտադրական հզորությունների և օբյեկտների ժամանակին գործարկման համար տրվող պարգևատրումների չափերը, գործող ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման աշխատանքների հաջող կատարման համար նախատեսվում են խրախուսումներ: Վերակառուցման աշխատանքներ կատարելու համար ձեռնարկվել են շինարարների շահագրգռվածությունը բարձրացնելու մի շարք միջոցառումներ, մտցվել են շինմոնտաժային աշխատանքների գործող նախահաշվային նորմաների և վերադիր ծախսերի շտկման ճյուղային գործակիցներ, վերջիններս հնարավորություն կընձեռեն հաշվի առնելու այդ աշխատանքների կատարման հետ կապված լրացուցիչ ծախսերը: Շինարարական մոնտաժային կազմակերպությունների տնտեսական գործունեության գնահատումը, ինչպես նաև նրանց տնտեսական խթանման ամբողջ համակարգը իրականացվելու է արտադրական կարողությունների և օբյեկտների գործարկման, ապրանքային շինարարական արտադրանքի արտադրության, աշխատանքի արտադրողականության և շահույթի աճի առաջադրանքների կատարման արդյունքների հիման վրա: Այդ սկզբունքները կոչված են արագացնելու արտադրական հզորությունների ու օբյեկտների գործարկումը և բարձրացնելու կապիտալ ներդրումների արդյունավետությունը:

Պատվիրատուի և կապալառուի միջև հաշվարկները կատարվելու են միայն ավարտված և գործարկված՝ արտադրանք թողարկելու պատրաստ օբյեկտների համար: Հաշվարկների այս կարգին անցնելն արդեն պետք է ավարտվի 1981 թվականին, որից հետո դադարեցվելու է պատվիրատուների կողմից կանխավճար տալու այժմյան կարգը և մտցվելու է շինմոնտաժային աշխատանքների անավարտ արտադրանքի ծախսերի վարկավորման սիստեմ: Ձեռնարկությունների և օբյեկտների գործարկումը ժամանակին չապահովող շինարարական-մոնտաժային կազմակերպությունները պետք է վճարեն վարկից օգտվելու բարձր տոկոսներ, որը կազդի նրանց շահույթների չափի, հետևաբար նաև տնտեսական խրախուսման ֆոնդերի վրա:

Սկսած տասնմեկերորդ հնգամյակից՝ ՍՍՀՄ մինիստրությունների, գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների համար հաստատվելու է կապիտալ շինարարության կայուն հնգամյա պլան (առաջադրանքները բաշխելով ըստ տարիների), որը հաշվեկշռված պետք է լինի նյութերի, տեխնոլոգիական և էներգետիկ սարքավորումների, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների, ինչպես նաև շինարարական-մոնտաժային կազմակերպությունների կարողությունների հետ:

Հնգամյակի ընթացքում պլանների կայունությունն ապահովելու, ինչպես նաև չնախատեսված դժվարությունները հաղթահարելու նպատակով ՍՍՀՄ մինիստրություններին, գերատեսչություններին և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին թույլատրված է ստորադաս կազմակերպություններին, պլաններ իջեցնելիս, նրանց տրամադրության տակ թողնել կապիտալ ներդրումների, շինարարական-մոնտաժային և կապալային աշխատանքների ռեզերվ, դրանց ընդհանուր լիմիտի մինչև 5 տոկոսի չափով՝ համապատասխան նյութական ու ֆինանսական ռեսուրսներով:

Հնգամյա պլանի առաջադրանքների կատարումն ապահովելու համար պայմաններ ստեղծելու նպատակով սահմանված է կապիտալ շինարարության անընդհատ ֆինանսավորման և վարկավորման կարգ: Ըստ որում, ֆինանսավորումը պետք է իրականացվի հաստատված տիտղոսացուցակներով, շինարարության ամբողջ ժամանակաշրջանի համար գոյություն ունեցող նախահաշիվների սահմաններում:

Կապիտալ շինարարության բնագավառում իրականացվող վերակառուցման մեջ կարևոր դեր ունեն ֆինանսական և բանկային մարմինները: Նրանք պետք է ակտիվորեն մասնակցեն հնգամյա պլանները կազմելուն, նպաստեն շարունակվող և գործարկվող օբյեկտներում միջոցների կենտրոնացմանը, ինչպես նաև կապիտալ շինարարության լիմիտների հատկացումն ուղղեն առաջին հերթին գործող ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նյութական և աշխատանքային ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործման նպատա-

ենթարկվում են գյուղշինմինիստրության մոնտաժային վարչությանը, «Հայէլեկտրամոնտաժ», «Հայգյուղմոնտաժ», «Հայարդվենտիլյացիա» տրեստներին և այլ կազմակերպությունների: Պատահում է այնպես, որ մեկ գոմ կառուցելիս հարկ է լինում գործ ունենալ մի քանի մոնտաժային կազմակերպությունների հետ: Շինարարությունը տուժում է կապալառու և ենթակապալառու կազմակերպությունների անհամաձայնեցված գործողություններից: Մինչդեռ «Հայգյուղմոնտաժ» տրեստը կարող էր մոնտաժային բոլոր աշխատանքները կատարել իր ուժերով, և դրանով իսկ կկանխվեին ձգձգումներն ու քաշքշուկը:

Գյուղշինմինիստրության կազմակերպություններում թույլ է կատարողական կարգապահությունը: Հնաբերդի ջրմուղի շինարարությունն այդ մինիստրության № 4 շինտրեստը սկսել է 1966 թվականին, և դեռ գործի կեսը չի արված:

Շրջանի սոցիալական զարգացման պլանին համապատասխան՝ Բերքառատում, Լեռնապարում, Ծիլքարում, Դերեկում, Սիփանում, Ծաղկահովիտում, Գեղաձորում, Միրաքում կառուցվել են դպրոցական շենքեր, Ույա Թաղայում, Ավշնում, Նորաշենում, Բերքառատում՝ մասնագետների և ուսուցիչների բնակելի տներ, շրջկենտրոնում՝ կինոթատրոնի շենք: Մշակույթի տուն է կառուցվում Գեղաձորում: Կառուցման ծրագրում կան բաղնիքներ, կենցաղսպասարկման տաղավարներ, մսուր-մանկապարտեզներ, այլևայլ օբյեկտներ: Այդ ծրագիրը կարելի է ժամանակին իրականացնել, եթե ապահովվի կապալառու և ենթակապալառու կազմակերպությունների համաձայնեցված, արդյունավետ աշխատանքը, բարձրացվի նրանց ղեկավարների պատասխանատվությունը, եթե կառույցները ժամանակին ապահովվեն շինանյութերով ու անհրաժեշտ մեխանիզմներով: Այս կապակցությամբ մենք կկամենայինք, որ գյուղշինմինիստրությունը սևեռուն ուշադրություն նվիրեր մեր շրջանում ծավալվող շինարարական աշխատանքներին: Այդպես է պահանջում ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումը, որը հիշեցրել է, որ «Արտադրական կարողությունների, ինչպես նաև բնակարանների, մանկական հիմնարկությունների, կենցաղային, բժշկական և կուլտուրական սպասարկման օբյեկտների գործարկման պլանները հաճախ չեն կատարվում»: Մեր բոլորի խնդիրն է անհրաժեշտ հետևություն անել այս դիտողությունից:

❋❋❋

Տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին շարունակում է իր հաղթական երթը: Հանրապետության աշխատավորները ձգտում են հաջողությամբ ավարտել այն, արժանավայել գործերով նշանավորել Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակը: Այդ պայքարի մեջ ակտիվորեն ներգրավվել են նաև արագածցիները: Նրանք մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ XXVI համագումար հրավիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումը և մեծ համաժողովը հաջողությամբ դիմավորելու համար մշակեցին լրացուցիչ միջոցառումներ:

Տարակույս չկա, որ Արագածի հողագործները և անասնապահները ամեն ինչ կանեն տասներորդ հնգամյակի ծրագիրը պատվով կատարելու, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները հաջողությամբ կենսագործելու համար:

**Հարցազրույցը վարեց Արտավազդ Սաքանյանը**

---

# ԳՈՐԾԵՐ ԵՎ ԾՐԱԳՐԵՐ

**Ս. Գ. ԳԱՍՈՅԱՆ**
«Նաիրի» թերթի խմբագիր

**ԲՈՒԼԴՈԶԵՐՆԵՐԻ ՀՌՆԴՅՈՒՆԸ** տարածվեց շրջապատում: Սկսվեց անսովոր մի գրոհ... քարերի դեմ: Տեղ-տեղ քարերի կույտեր բարձրացան: Քարերը շատ էին՝ մեծ, փոքր, անհաշիվ: Հսկա մեքենաները հաճախ դժվարությամբ էին տեղահան անում դրանք: Իսկ կույտերն աստիճանաբար բարձրանում էին: Հողը ձերբազատվում էր քարերից: Անմշակ հողը կենդանանում էր...

Ճամփեզրին նոր բլուրներ գոյացան: Այս անգամ արդեն՝ պատրաստի հողախառնուրդից: Դրանք պետք է բարձվեին կցասայլերը, ավտոմեքենաները, տեղափոխվեին նոր հիմնվող այգու միջշարային տարածությունները և լցվեին փոսերը: Դաշտավարական № 5 բրիգադի բրիգադավար Ժորա Հարությունյանը հետո պիտի այսպես հիշեր մեկ տարվա կյանք ունեցող պատմությունը. «Տղաներն զգում էին գործի պատասխանատվությունը: Հող, գոմաղբ, հանքային պարարտանյութ էին տեղափոխում: Էքսկավատորավար Թոռնիկ Բաղալյանը բեռնում էր կցասայլերը... մեխանիզատորներ Սոս Ավագյանը, Իսլամ և Անդրանիկ Ուդումյանները, Կամո Մարտիրոսյանը տնկիների համար փոսեր էին պատրաստում: Մաքրվող տարածությունները տեղագծում էին այգեգործներ Ազիզ Մուրադյանը, Սիսակ Կարապետյանը, Հարություն Վարդանյանը...»: 80 հեկտարի վրա ծնվում էր պալմետային այգին: Դրան պետք է ավելանար ևս 120 հեկտար: Դա նշանակում էր, որ մոտավոր հաշվարկներով եկող հնգամյակում միայն Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումը կտանա այնքան պտուղ, ինչքան այժմ Նաիրիի ամբողջ շրջանը:

Իսկ գործի սկիզբը այսպես դրվեց:

Երբ կուսակցության Նաիրիի շրջանային կոմիտեում որոշվում էին պտղաբուծության հետագա զարգացման արդյունավետ ուղիները, Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումի սկզբնական կուսկազմակերպությունը հանդես եկավ լավ նախաձեռնությամբ. ընդարձակել պտղատու այգիները ինտենսիվ եղանակով: Ինտենսիվ այգեգործության զարգացման հարցը գործնական կերպով քննարկվեց տնտեսության կուսկազմակերպության դռնբաց ժողովում:

Լուրջ ու պատասխանատու գործ էր սպասվում այգեգործներին: Անհրաժեշտ էր ժամանակին պատրաստել փոսերը, տնկումները կատարել ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում, ապահովել համապատասխան խնամք ու մշակություն: Աշխատանքի ծավալը բավականաչափ մեծ էր, իսկ եղած բանվորական ուժը զգալիորեն քիչ էր պահանջվածից: Բացի դրանից, պետք էր կարևոր այդ ճակատն ամրապնդել կոմունիստներով, այնտեղ գործուղել պատասխանատվության մեծ զգացում ունեցող մարդկանց: Այս հարցերը հանգամանորեն քննարկվեցին կուսբյուրոյի հերթական նիստում, լսվեցին առանձին կոմունիստների, այգեգործների կարծիքները: Որոշվեց նոր յուրացված տեղամասերից մեկում այգի հիմնելը հանձնարարել № 6 բրիգադին, որի ղեկավար նշանակվեց տեխնիկումի դասատու, կոմունիստ Վազգեն Մարգարյանը: Միաժամանակ կազմակերպվեցին կոմերիտական-երիտասարդական բրիգադներ՝ տեխնիկումի դասատուների ղեկավարությամբ: Նրանց մեջ էին և իրենց տրված կուսակցական հանձնարարությունը բարեխղճությամբ կատարեցին կոմունիստներ Ռաֆիկ Սերոբյանը, Վոլոդյա Գևորգյանը, Աշոտ Սարգսյանը:

Քաղվածք կուսկազմակերպության ժողովի արձանագրությունից: **ՀԱՅԿ ԴՈՐՈՒՆՑ (տեխնիկումի դասատու).— Տարիներ առաջ, երբ հիմնադրվեց Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումը, շատերը չէին հավատում, որ այստեղ պտղատու ծառեր կանեն... Այսօր մենք սկսում ենք նոր գործ, սկիզբ դնում կուլտուրական այգեգործությանը: Մեր կուսկազմակերպության նա-**

# ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

**Ն. Ա. ԱՓԻՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների թեկնածու

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԸ լայն ասպարեզ է բացել մեր
հանրապետության աշխատավորության համակողմանի
քաղաքական ստեղծագործության համար: Այն առավել մեծ թափ ու ազդեցու-
թյուն է ձեռք բերել Հայկական ՍՍՀ սահմանադրության ընդունումով: Սահմա-
նադրությունն ինքը այդպիսի պատմական ստեղծագործության ծնունդ է, բան-
վորների, կոլտնտեսականների, մտավորականների կոլեկտիվ մտքի արգասիքը:
Նրանց շահերն ու կամքը իրենց արժանի արտացոլումն են գտել նաև Հայկա-
կան ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին օրենքում և իրավական այլ փաստա-
թղթերում: Այդ օրենքի քննարկման և ընդունման ամբողջ պրոցեսը ցույց տվեց,
որ մեր աշխատավորներն առավել ակտիվորեն են մասնակցում հանրապետու-
թյան կյանքի, դրա տնտեսական ու կուլտուրական շինարարության, ինչպես
նաև մեր երկրի ներքին ու արտաքին քաղաքականության հետ կապված ամե-
նաբազմազան հարցերի լուծմանը:
1978 թ. դեկտեմբերի 15-ին Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերա-
գույն սովետի իններորդ նստաշրջանն ընդունեց Հայկական ՍՍՀ Մինիստրների
խորհրդի մասին օրենքը, որը կարևոր քայլ հանդիսացավ հանրապետության
կառավարության կազմակերպումն ու գործունեությունը բարելավելու, դրա
օրենսդրությունը կատարելագործելու ասպարեզում: Օրենքն էլ ավելի մեծաց-
րեց պահանջները Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, բոլոր մինիստրու-
թյունների ու պետական կոմիտեների, ինչպես նաև հանրապետական այլ կազ-
մակերպությունների աշխատանքի նկատմամբ:
Այդ փաստաթղթի նշանակությունն ամենից առաջ այն է, որ Հայկական
ՍՍՀ կառավարության կանոնադրությունն ու գործունեությունը կանոնարկող
իրավական նորմերը համապատասխանեցնում է ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ սահ-
մանադրությանը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մասին օրենքին, ինչպես նաև
սովետական հասարակության զարգացման արդի մակարդակին:
Հայտնի է, որ Հայկական ՍՍՀ զարգացման տարբեր փուլերում դրա կա-
ռավարության իրավական կանոնադրությունը, մասնավորապես դրա կազմա-
վորման ու պատասխանատվության կարգը, ինչպես և աշխատանքի ձևերն ու
մեթոդները ընդհանուր առմամբ ամրագրվել են հանրապետության սահմանա-
դրություններում: Այդ հարցերը հստակ ու կոնկրետ սահմանված են նաև Հայ-
կական ՍՍՀ 1978 թ. սահմանադրությունում, որը միաժամանակ լենինյան



սկզբունքների ու գաղափարների հիման վրա, ՍՍՀՄ սահմանադրությանը հա-
մապատասխան կարգորոշում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի դերն ու
խնդիրները սոցիալիստական համաժողովրդական պետության ֆունկցիաներն
իրականացնելու գործում:
Հանրապետության կառավարության կազմավորման ու գործունեության
համար բացառիկ կարևոր իրավական նշանակություն ունի սահմանադրության
124-րդ հոդվածը, որտեղ ուղղակի շեշտված է, թե «Հայկական ՍՍՀ Մինիստր-
ների խորհրդի ու նրա նախագահության իրավասությունը, նրանց գործունեու-
թյան կարգը, մյուս պետական մարմինների հետ Հայկական ՍՍՀ Մինիստրների
խորհրդի հարաբերությունները, ինչպես նաև Հայկական ՍՍՀ միութենական-
հանրապետական և հանրապետական մինիստրությունների ու պետական կո-
միտեների ցանկը որոշվում են սահմանադրության հիման վրա՝ Հայկական
ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին օրենքով»: Սահմանադրության այս հոդ-
վածն իրավական նախադրյալ և հիմք է ծառայել Հայկական ՍՍՀ Մինիստրների
խորհրդի մասին օրենքի ընդունման համար, որում պետք է ավելի մանրամասն
ու համակողմանի կանոնարկվեին հանրապետության կառավարության կազ-
մավորման ու գործունեության հարցերը, դրա փոխհարաբերությունները մյուս
պետական մարմինների ու կազմակերպությունների հետ: Հետևաբար այդ օրեն-
քի ընդունումը փաստորեն ՍՄԿԿ XXV համագումարի կանխանշած օրենսդրա-
կան աշխատանքների լայն ծրագրի իրագործման առաջին քայլերից մեկն էր՝
հիմնված Հայկական ՍՍՀ 1978 թ. սահմանադրության վրա:
Ինչպես հայտնի է, մեր կուսակցության XXV համագումարը, խնդիր դնե-
լով մեր օրենքներն ավելի մատչելի դարձնել սովետական բոլոր քաղաքացի-
ների համար, հանձնարարեց համապատասխան մարմիններին «առաջարկու-
թյուններ նախապատրաստել աշխատանքային, վարչական իրավունքի և մի
քանի այլ օրենքների հետագա կատարելագործման վերաբերյալ, որպեսզի
հաշվի առնվեն հասարակական կյանքի նոր երևույթները» (ՍՄԿԿ XXV համա-
գումարի նյութերը, էջ 123):
Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին օրենքի ընդունումը թելա-
դրված էր մեր հասարակության և պետության զարգացման ողջ ընթացքով, մի
շարք, այդ թվում նաև իրավական բնույթի, պատճառներով: Դրանցից մեկն այն
էր, որ մինչև 1978 թ. կեսերը չկար մի այնպիսի փաստաթուղթ, որը համակող-
մանի ու մանրամասն կարգավորեր Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի
գործունեությունը, դրա ձևերն ու մեթոդները: ՀՍԽՀ ժողովրդական կոմիսար-
ների խորհրդի մասին կանոնադրությունը, որը հաստատել էին ՀՍԽՀ Կենտ-
գործկոմն ու Ժողկոմխորհը 1932 թ. սեպտեմբերի 22-ին, այդ հարցերը սահմա-
նում էր միայն ընդհանուր առմամբ և ոչ լիովին: Ընդ որում, դրա շատ դրույթ-
ներ արդեն հնացել էին և չէին համապատասխանում մեր հասարակության
պատմական զարգացման ներկա փուլի պահանջներին, կյանքի նոր պայման-
ներին: Բնական է, որ այդ ամենը ինչ-որ չափով բացասաբար էր անդրադառ-
նում ինչպես գործադիր-կարգադրական աշխատանքի, այնպես էլ ժողովր-
դական տնտեսության կառավարման ու պլանավորման կատարելագործման
նպատակով պրակտիկ գործունեության մակարդակը բարձրացնելու վրա:
Մինչդեռ հանրապետության տնտեսության արդյունավետ զարգացման
ուժգնացած պրոցեսը և, մասնավորապես, ժողովրդական տնտեսության զա-
նազան ճյուղերի թվական աճը, գիտության ու արտադրության միջև նոր կա-
պերի ստեղծումը մեծացրին տնտեսությունը ղեկավարելու և ժողովրդատն-
տեսական ճյուղերի զարգացումը կոորդինացնելու նշանակությունը, նոր կա-
րևոր խնդիրներ առաջադրեցին այդ ֆունկցիաներն իրագործող Հայաստանի
կառավարությանը և բարձրացրին նրա պատասխանատվությունը դրանց կա-
տարման գործում: Իսկ դա իր հերթին պահանջում էր Հայկական ՍՍՀ Մինիս-
տրների խորհրդի և դրա կառուցվածքային ստորաբաժանումների գործունեու-
թյան իրավական հիմքերի հետագա ամրապնդում, ինչպես և դրանց տեղի ու
դերի որոշում հանրապետության պետական մարմինների ընդհանուր համա-
կարգում:

միջ: Բացի այդ, կառավարությունը իրավական աշխատանք է կազմակերպում պետական կառավարման մարմիններում և միջոցներ է ձեռնարկում գործող օրենսդրությունը կատարելագործելու բնագավառում:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին օրենքի նպատակն է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը, որը կատարվում է պետական գործերի կառավարմանը քաղաքացիների հետզհետե ավելի լայն մասնակցությամբ, ժողովրդական վերահսկողության ուժեղացմամբ, պետության գործերը վարելիս հրապարակայնության ընդլայնմամբ: Օրենքում դրան համապատասխան սահմանվում է, որ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդն իր գործունեության ընթացքում ղեկավարվում է դեմոկրատական ցենտրալիզմի, սոցիալիստական ֆեդերալիզմի, պատշաճ օրինականության, իր գործունեության հրապարակայնության և հասարակական կարծիքը հաշվի առնելու սկզբունքով: Այդ օրենքը, մասնավորապես, ապահովում է ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ սահմանադրությունների, ՍՍՀՄ օրենքների և ՍՍՀՄ Գերագույն սովետի ու նրա նախագահության այլ որոշումների, Հայկական ՍՍՀ օրենքների և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ու նրա նախագահության այլ որոշումների անշեղ պահպանումը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների ու կարգադրությունների կատարումը, կազմակերպում է պետական մարմինների ու հասարական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ու քաղաքացիների առաջարկությունների հայտնաբերումն ու օգտագործումը՝ համապատասխան հարցերը լուծելիս: Կարևոր է օրենքի 3-րդ հոդվածում նշումն այն մասին, որ օրենքով նախատեսված դեպքերում հասարակական կազմակերպությունների հանրապետական մարմինները ըստ նրանց կանոնադրական խնդիրների մասնակցում են Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի լուծելիք հարցերի քննությանը: Այդ նորմը վկայում է կառավարման այնպիսի կենտրոնական ապարատ ստեղծելու վերաբերյալ լենինյան գաղափարը կյանքում լիովին իրականացնելու մասին, որտեղ կոլեգիալության և միանձնյա ղեկավարության սկզբունքները օրգանապես կապված լինեն աշխատավորների մասսայական կազմակերպությունների, նրանց գործունեության հետ:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին վերաբերող այս օրենքը մշակված է այնպես, որ առավել լրիվ ու բազմակողմանիորեն ապահովի ՍՍՀ Միության և հանրապետության շահերի զուգակցումը պետական կառավարման ոլորտում: Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ու միութենական մյուս հանրապետությունների Մինիստրների խորհուրդների փոխհարաբերությունները կարգավորվում են սոցիալիստական ֆեդերացիայի սկզբունքներով: Օրենքի 18-րդ հոդվածում նշված է, որ համաձայն ՍՍՀՄ օրենսդրության, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը մասնակցում է ՍՍՀՄ կառավարությունում և ՍՍՀ Միության այլ մարմիններում այնպիսի հարցերի լուծմանը, որոնք հանձնված են ՍՍՀ Միության տնօրինությանը, և նրանց քննարկմանն է ներկայացնում համամիութենական նշանակություն ունեցող հարցերի վերաբերյալ առաջարկներ: Միաժամանակ հանրապետության կառավարությունը համագործակցում է ՍՍՀՄ մինիստրությունների, պետական կոմիտեների և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին ենթակա մյուս մարմինների հետ՝ իրականացնելու իր և այդ մարմինների իրավասությունները, տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները և համապետական, միջճյուղային ու ռեգիոնալ բնույթի կարևորագույն կոմպլեքսային ծրագրերը:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը միավորում և ուղղություն է տալիս միութենական-հանրապետական և հանրապետական մինիստրությունների ու պետական կոմիտեների, իրեն ենթակա մյուս մարմինների աշխատանքին, առաջարկություններ է մտցնում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետ, իսկ դրա նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահություն՝ մինիստրություններ ու պետական կոմիտեներ կազմելու կամ այդպիսիները լուծարքի ենթարկելու վերաբերյալ, սահմանված կարգով մինիստրությունների և պետական կոմիտեների, իրեն ենթա-



կա մյուս մարմինների մասին հաստատում է կանոնադրություններ, ինչպես նաև դրանց կենտրոնական ապարատի կառուցվածքը և սահմանում այն փոփոխելու կարգը: Դրանով հանդերձ նա նշանակում է կոմիտեների, գլխավոր վարչությունների և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր մյուս գերատեսչությունների ղեկավարներին, պետական կոմիտեների նախագահներին և իրեն ենթակա մյուս մարմինների ղեկավարների տեղակալներին, հաստատում է Հայկական ՍՍՀ մինիստրությունների և պետական կոմիտեների կոլեգիաների, ինչպես նաև Հայկական ՍՍՀ պետական կոմիտեների անդամներին: Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը սիստեմատիկորեն վերահսկում է հանրապետական մինիստրությունների և պետական կոմիտեների, իրեն ենթակա մյուս մարմինների գործունեությունը, նրանց ղեկավարների նկատմամբ կարգապահական իշխանություն է գործադրում:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը 19-րդ հոդվածով սահմանում է հարաբերություններ ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեների հետ: Ըստ այդ հոդվածի Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդն իր լիազորությունների շրջանում ղեկավարում է ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեների գործունեությունը, անհրաժեշտ փոխգործողություններ է ապահովում նրանց և հանրապետության մինիստրությունների, պետական կոմիտեների և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին ենթակա մյուս մարմինների միջև՝ նրանց իրավասությունները կենսագործելու և կյանքում տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններ, հանրապետական, միջճյուղային և ռեգիոնալ կոմպլեքսային ծրագրեր իրականացնելու ոլորտում, վճռում այդ ընթացքում ծագող հարցերը:

Վերահսկելով ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեների գործունեությունը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդն իրավասու է չեղյալ համարել աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային (հանրապետական ենթակայության քաղաքների) սովետների գործադիր կոմիտեների որոշումներն ու կարգադրությունները:

Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեները 19-րդ հոդվածով իրավունք ունեն սահմանված կարգով մասնակցելու Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի տնօրինությանը հանձնված հարցերի քննարկմանը: Բացի այդ, ժողովրդական դեպուտատների շրջանային և քաղաքային (հանրապետական ենթակայության քաղաքների) սովետների գործադիր կոմիտեները հանրապետության Մինիստրների խորհրդի քննարկմանն են ներկայացնում առաջարկություններ Հայկական ՍՍՀ կառավարության լուծում պահանջող հարցերի վերաբերյալ:

Այդ հոդվածով, փաստորեն վերացվեց հիշյալ մարմինների միջև չհամաձայնեցված գործողություններ առաջ գալու հնարավորությունը և դրանց համար հուսալի իրավական հիմք ապահովվեց իրենց իրավունքներն ու պարտականությունները ճիշտ կենսագործելու համար:

Օրինագծի 6-րդ հոդվածը, որը վերաբերում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի իրավասությունների ընդհանուր հարցերին, լրացվել է հետևյալ մասով. «...որոշում է հանրապետական և տեղական նշանակության պետական ձեռնարկություններ, կազմակերպություններ ու հիմնարկություններ ստեղծելու, վերակազմելու և լուծարքի ենթարկելու կարգը»: Սոցիալական զարգացման և մշակույթի բնագավառում Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի հիմնական լիազորություններին վերաբերող 8-րդ հոդվածն իր 4-րդ կետում լրացվել է հետևյալ դրույթով. «...ապահովում է քաղաքների և այլ բնակավայրերի բարեկարգման ղեկավարումը»:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և նրա նախագահության նիստերում քննարկվում են պետական կարևոր նշանակություն ունեցող հարցեր: Համաձայն օրենքի, իրավական այն ակտերը, որոնց միջոցով հանրապետության կառավարությունն իրագործում է իր իրավասությունը, նրա որոշումներն ու կարգադրություններն են: Ի տարբերություն նախորդ օրենսդրության, այդ օրենքը միմյանցից հստակ սահմանազատում է Հայկական ՍՍՀ Մինիստրների

խորհրդի ակտերի այդ երկու ձևերը։ Կառավարության՝ նորմատիվ բնույթի կամ ժողովրդատնտեսական կարևոր և ընդհանուր նշանակություն ունեցող որոշումները կայացվում են իբրև կառավարական որոշումներ, իսկ օպերատիվ և այլ ընթացիկ հարցերի վերաբերյալ եղածները՝ կարգադրությունների ձևով։ Ըստ 31-րդ հոդվածի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշումները հրապարակվում են հանրապետության կառավարության որոշումների ժողովածուում, իսկ դրանց լայն ու անհապաղ հրապարակման անհրաժեշտության դեպքում մասսայական ինֆորմացիայի միջոցներով հայտնվում է բոլորին։ Դա նշանակալից չափով հեշտացնում է դրանց սիստեմավորումը։

Օրենքը սահմանում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի գործերի կառավարչության իրավական կանոնադրությունը։ Դա մի ապարատ է, որն ապահովում է մեր հասարակության և պետության կյանքի տարբեր հարցերի վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումների կատարման սիստեմատիկ ստուգումը։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին նոր օրենքը պետական ապարատի հետագա կատարելագործման, նրա գործունեության բարելավման, ժողովրդական լայն մասսաների հետ նրա կապերի ամրապնդման վերաբերյալ Հայաստանի կոմունիստական կուսակցության հոգատարության վառ դրսևորումն է։ Այդ կարևոր իրավական փաստաթուղթը ո՛չ միայն սահմանում է պետության գործերի կառավարման ասպարեզում Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի պարտականությունների ողջ շրջանակը, այլև հանրապետության յուրաքանչյուր քաղաքացու հնարավորություն է ընձեռում խոր և համակողմանի պատկերացնելու իր սեփական իրավունքները և պատասխանատվությունը հանրապետությունում տիրող գործերի վիճակի համար, ակտիվ կերպով մասնակցելու պետության գործերի կառավարմանը։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին օրենքը հանրապետության կառավարության գործունեության մակարդակի հետագա բարձրացման և օրենսդրության կատարելագործման կարևոր գործոն է։

---



# Ն. Գ. ՉԵՐՆԻՇԵՎՍԿԻՆ ԵՎ ԱՍՏՐԱԽԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂՈՒԹԸ

**Մ. Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր

**ՍԻԲԻՐՅԱՆ ԵՐԿԱՐԱՏԵՎ** տաժանակրությունից և աքսորից հետո (մոտ 20 տարի) ռուս մեծ դեմոկրատ-հեղափոխական Նիկոլայ Գավրիլովիչ Չերնիշևսկուն (1828—1889) թույլատրվեց տեղափոխվել Ռուսաստանի Եվրոպական մասը և 1883 թ. հոկտեմբերից 1889 թ. հունիսը ապրել Աստրախանում։ Այդ ժամանակ Աստրախանում կար հայկական մեծ գաղութ։ Չերնիշևսկին բնակարան է վարձում հայ վաճառականներ Խաչիկովի, Արգարովի, Ջանումովի և այլոց տներում։ Բավական երկար ժամանակ նա ապրում է հայերի շրջանում։ Սույն հոդվածում մենք կկամենայինք անդրադառնալ այս շրջապատի հետ նրա ունեցած կապերի մի քանի կողմերի։

1.

Նախ՝ փոքր-ինչ ավելի մանրամասն այն հանգամանքների մասին, որոնք նրան հասցրել էին Աստրախան։ Կարելի է համարձակ ասել, որ այն պահից, երբ Չերնիշևսկին տաժանակրության դատապարտվեց և աքսորվեց Սիբիր, ռուս հեղափոխական երիտասարդությունը մշտապես մտածում էր կազմակերպել նրա փախուստը, դուրս կորզել նրան իշխանությունների ճիրաններից։ Նման ցանկություն առաջացավ ինչպես Ռուսաստանում, նույնպես և արտասահմանում. այդ մտքի գործնական իրականացմանը ձեռնամուխ եղան և՛ մեկուսի գործող անհատներ, և՛ ընդհատակյա կազմակերպություններ։ Չերնիշևսկուն ազատելը դարձավ առաջավոր Ռուսաստանի քաղաքաքաղաքական կարևորագույն պահանջը։

Իրենց առջև նման խնդիր դնող առաջիններից էին կարակոզովականները։ Կարակոզովական Ի. Ա. Խուդյակովի գործի մեղադրականում նշված է, որ նա մասնակցել է Չերնիշևսկուն ազատելու ծրագրերին՝ Ն. Պ. Ստրա-




Գ. Վեբերի «Համընդհանուր պատմություն» գրքի շապիկը՝ Ն. Գ. Չերնիշևսկու ռուսերեն և հայերեն ինքնագրով։

դինին (որ պետք է մեկներ Սիբիր) ապահովելով կեղծ անձնագրերով և երաշխավորական նամակներով: Բոլոր կարակոզովականներն իրենց ցուցմունքներում հաստատում էին, որ, իրոք, իրենք մտադիր են եղել ազատել Չերնիշևսկուն: Գերագույն քրեական դատարանի դատավճռում ասված էր, որ բոլոր դատապարտյալները նպատակ ունեին ազատել «պետական հանցագործ Չերնիշևսկուն, որպեսզի նա ղեկավարեր ենթադրվող հեղափոխությունը և ամսագրի հրատարակման գործը»:

Խորապես դրամատիկական էին Չերնիշևսկուն ազատելու մյուս փորձերը: 1870 թվականի դեկտեմբերին կեղծ անձնագրով Լոնդոնից Պետերբուրգ մեկնեց ականավոր հեղափոխական Գերման Ալեքսանդրովիչ Լոպատինը: Բարձր էր գնահատում Չերնիշևսկուն Կ. Մարքսը, որպես ինքնատիպ տնտեսագետ և կապիտալիզմի քննադատ: Մարքսի հետ ունեցած զրույցների ժամանակ Լոպատինի հոգում, իր իսկ խոսքերով ասած, բռնկում էր «իր մեծ հայրենակցին աշխարհին վերադարձնելու փորձ անելու այրող ցանկությունը»: Հասնելով Իրկուտսկ՝ շուտով նա ճանաչվեց ու ձերբակալվեց ոստիկանության կողմից: Լոպատինը բազմիցս փախել է ցարական բանտերից, թաքնվել և ատտանդական կյանք է վարել Սիբիրի քաղաքներում, որոնել իր մտահղացումն իրականացնելու ռեալ ուղիներ: Բայց այդ նրան չի հաջողվել և ի վերջո նա ստիպված է եղել փախչել արտասահման:

Նպատակին առավել մոտ է եղել մի այլ ռուս հեղափոխական՝ Իպոլիտ Նիկիտիչ Միշկինը: Զգեստափոխված, ոստիկանական սպայի համազգեստով, Մեշերինով ազգանվամբ, 1875 թվականի հուլիսի 12-ին նա գալիս է Վիլյույսկ, ուր այդ ժամանակ աքսորված էր Չերնիշևսկին: Բայց տեղական ոստիկանապետը չհավատաց փաստաթղթերին և Չերնիշևսկուն չհանձնեց նրան, իբր նոր ապրելատեղ՝ Բլագովեշչենսկ ուղարկելու պատճառով: Միշկինը մի շարք վրիպումներ թույլ տվեց. նախ՝ նա ժամանեց առանց ուղեպայուսակի և ուղեկցողի. այդպես չէին շրջում կարևոր անձինք, երկրորդ՝ նրա թղթերում Չերնիշևսկու մասին ասված չէր, թե նա «պետական հանցագործ» է, ապա՝ Յակուտիայի նահանգապետի կողմից ուղղակի գրված չէր Չերնիշևսկուն իրեն հանձնելու մասին: Ոստիկանապետը գլխի ընկավ, որ գործ ունի կեղծ սպայի հետ, և երբ Միշկինը ցանկություն հայտնեց գնալ Իրկուտսկ, նա տվեց նրան երկու կազակներ, իբրև թե ուղեկցելու համար, իսկ իրականում նրան հսկելու նպատակով: Ճանապարհին վիրավորելով կազակներին՝ Միշկինը թաքնվեց, բայց շուտով ձերբակալվեց, իսկ հետագայում դատվեց «193»-ի պրոցեսի առիթով և մահապատժի ենթարկվեց Շլիսելբուրգի ամրոցի բակում:

Դրանից ավելի առաջ հայտնի ռուս բանաստեղծ Ա. Ն. Տոլստոյը ազնիվ մի քայլ կատարեց՝ պաշտպանելով Չերնիշևսկուն: Ալեքսանդր II-ի անձնական բարեկամը և պատանեկության ընկերն էր նա: Որսի ժամանակ արքան կանչեց նրան իր մոտ և սկսեց հարցուփորձել գրականության ոլորտի եղելությունների վերաբերյալ: Տոլստոյը որոշեց օգտվել հարմար առիթից և ի պատասխան ասաց. «Ռուս գրականությունը սգազգեստ է հագել Չերնիշևսկուն հանիրավի դատապարտելու առիթով»: Ալեքսանդր II-ը անմիջապես ընդհատեց նրան խիստ և զայրալից ձայնով. «Խնդրում եմ քեզ, Տոլստո՛յ, երբեք չհիշեցնել ինձ Չերնիշևսկու մասին»:

Այսպիսի մի փաստ ևս: 1874 թվականի օգոստոսին Վիլյույսկ է գալիս Յակուտիայի նահանգապետի համհարզ Բաննիկովը: Նա հատուկ հանձնարարություն ուներ՝ ստորագրելու համար Չերնիշևսկուն հանձնել իր ներման մասին խնդիրքը: Չերնիշևսկին վճռականորեն մերժում է այդ առաջարկը. «Շնորհակալ եմ: Բայց դե ինչի՞ համար պետք է ներումն խնդրեմ: Որքան ինձ հայտնի է, ես աքսորված եմ միայն նրա համար, որ իմ գլխի և ժանդարմների պետ Շուվալովի գլխի կառուցվածքը տարբեր է: Մի՞թե դրա համար կարելի է ներումն խնդրել»:

Ցարական իշխանությունները կամենում էին Չերնիշևսկուն ծնկի բերել և բարոյապես, սակայն այդ նրանց չհաջողվեց: Մինչև վերջ նրա կամքը մնաց անկոտրում: Նա ոչ մի բանում իրեն մեղավոր չէր համարում, իսկ ցարիզմը չէր կամենում հենց այնպես, հոժարակամ ազատել նրան: Դրությունը փոխվեց Ռուսաստանում հեղափոխական շարժման նոր վերելքի առնչությամբ: Այս նոր պայմաններում ևս Չերնիշևսկու ստեղծագործությունները ոգևորում էին մարդկանց և ոսքի հանում նրանց ցարիզմի դեմ մղվող պայքարի: Ուսանողական բոլոր երեկույթներում ու հավաքներում, ի պատիվ մեծ հեղափոխականի, հնչում էր կենացի այս երգը.

*Խմե՛նք կենացը*
*«Ի՞նչ անել» գրողի,*
*Նրա հերոսների,*
*Նրա իդեալի:*

Ալեքսանդր II-ի սպանությունից հետո իշխանությունը հույժ անհանգստացած էր գահաժառանգի անվտանգ թագադրության առնչությամբ: Այն հարկադրված էր բանակցություններ վարել «Նարոդնայա վոլյա»-ի Գործադիր կոմիտեի հետ: Վերջինս, որպես նման երաշխիքի առաջին պայման, առաջադրեց Չերնիշևսկու ազատումը: Ցարական իշխանությանն այլ ելք չէր մնում, չնայած, համաձայնելով այդ պայմանին, իր խոստումն ամբողջովին չկատարեց. հայրենի քաղաքի՝ Սարատովի փոխարեն Չերնիշևսկուն թույլատրվեց ապրել Աստրախանում:

Վիլյույսկից Աստրախան ընկած ճանապարհը փոստակառքով ու երկաթուղով ավելի քան մեկ ամիս տևեց: 1883 թվականի հոկտեմբերի 27-ին Աստրախանի նավամատույցում Չերնիշևսկին սպասում էր կինը՝ Օլգա Սոկրատովնայի ժամանմանը՝ Սարատովից: Երեք օր անց նրանք երեքսենյականոց բնակարան վարձեցին հայ վաճառական Խաչիկովի տանը:

Զ.

Դյուրին չէր Չերնիշևսկու կյանքը նոր բնակատեղում: Գլխավորը փոքրիշատե կայուն աշխատանք գտնելն էր «ապրելու» և իր այդքան երկարատև բացակայության ընթացքում կուտակված պարտքերը վճարելու համար: Ցարական իշխանությունը կտրականապես մերժեց ինքնուրույն գրական գործունեության վերադառնալու նրա ցանկությունը: Ինչպես կրակից, այն վախենում էր ռուսական ամսագրերում ու լրագրերում Չերնիշևսկու անվան հիշատակումից իսկ: Չէ՛ որ այդպիսի գործունեությամբ էր նա դարձել «պետական հանցագործ» և այնպես խստորեն պատժվել: Կրկին տեսնել նրան նույն դերո՞ւմ, երբե՛ք: Այդ նպատակով խիստ ցուցում էր տրված ցարական գրաքննությանը: Արգելված էր նույնիսկ Չերնիշևսկու նախկին գրական աշխատությունների վերահրատարակությունը:

Իշխանության այդ մտադրություններին քաջատեղյակ բուրժուական-լիբերալ մամուլը, դրանց համապատասխան, իր վերաբերմունքն էր մշակում մեծ հեղափոխականի նկատմամբ, երբեմն որոշ տակտ պահպանելով: Այդ մամուլի տարբեր միջոցներով կրկին ռուսական գրականության ասպարեզ դուրս գալու Չերնիշևսկու բոլոր փորձերը ձախողվում են: Բանը ո՛չ միայն այդ ճանապարհին ցարական գրաքննության հարուցած արգելքներն էին: Էական դեր էին խաղում այստեղ սկզբունքային ըմբռնումները— կողմերի հայացքների տարբերությունը, հակասականությունը: Երբ Չերնիշևսկուն հայտնեցին, թե իր փիլիսոփայական հոդվածները պիտանի չեն «Վեստնիկ Եվրոպի» լիբերալ ամսագրի համար, նա հանգիստ պատասխանեց. «Ես ոչ մի հավակնություն չունեմ: Ես չեմ պատկանում այն դպրոցին, որի ոգով գրում է «Վեստնիկ Եվրոպի»-ի փիլիսոփա Կավելինը» (Ն. Գ. Չերնիշևսկի, Երկեր, հ. XV, էջ 515)*: Կավելինը լիբերալ էր և իդեալիստ: Չերնիշևսկին չի թաքցրել իր տարաձայնությունները բուրժուասզնվականական «ռաքոտադատելներից» և ոչ մի քայլ չի նահանջել իր դիրքերից:

Ի՞նչ անել, չէ որ պետք է աշխատել, աշխատել ոչ թե ժամանցի, այլ ընտանիքը՝ կնոջը և երկու որդիներին `պահելու համար, որոնցից մեկը ծանր հիվանդ է: Տվե՛ք, գտեք, որևէ աշխատանք, խնդրում էր նա բարեկամներին ու ծանոթներին: Ի վերջո նրանց հաջողվեց տեղավորել նրան աշխատանքի, իբրև թարգմանիչ: Անելանելի չներկայացնենք վիճակը, բայց իրականում Չերնիշևսկու կյանքի ամենածանր շրջաններից մեկն էր դա: Իր ժամանակի մեծագույն մտածողը ստիպված էր զբաղվել թարգմանչի զուտ «մեխանիկական» աշխատանքով: «Գրքեր եմ թարգմանում. ինձ նման մարդը պե՞տք է որ ժամանակ վատներ այս կոպեկանոց աշխատանքի վրա: Ինչևէ, միք փիլիսոփայի այս խոսքերի առիթով... Քանի դեռ այլ աշխատանք չունեմ, ինչպե՞ս կարող եմ ուրախ չլինել թեկուզ և սրանով» (նույն տեղը, էջ 450): Անտանելի էր և Չերնիշևսկու շուրջը տիրող բարոյական մթնոլորտը: Ցարական Ռուսաստանի այդ գավառական քաղաքի քաղքենիական միջավայրն ամենայն ծանրությամբ ճնշում էր նրան: Տեղացիները, հատկապես նրանք, որ իրազեկ էին Չերնիշևսկու գործին, սովորաբար խուսափում էին նրա հետ հաղորդակցվելուց: Բնականաբար, այդ ասպարեզում նախաձեռնողը չէր կարող լինել ցարիզմի նախկին կալանավորը: Գաղտնի հսկողությունը պահպանվում էր: Բացի ոստիկաններից ու ժանդարմներից, քաղաքի մյուս բոլոր, իշխանությունների կարծիքով, կարևոր անձինք ինչպես հարկն է տեղեկացված էին և ճշտել էին իրենց դիրքորոշումը: Օրինակ, Աստրախանի գիմնազիայի դիրեկտոր Ռուբցովը, վերադառնալով արձակուրդից և իմանալով, որ իր բացակայության ընթացքում Չերնիշևսկին այցելել և օգտվել է իր հաստատության գրադարանից, որտեղ կային եվրոպական և արևելյան լեզուներով, այդ թվում և պարսկերեն ու հայերեն բազմաթիվ արժեքավոր գրքեր, կարգադրեց այլևս թույլ չտալ նրան ոտք դնել «գիմնազիայի շեմին»:

Շատ նեղ էր Չերնիշևսկուն շրջապատող

* *Հեղինակի բոլոր վկայակոչումները կատարված են Ն. Գ. Չերնիշևսկու երկերի ժողովածուի տասնվեցհատորյակից:* Խմբ.:

սակայն, չիրականացավ: Երբ վերջապես, Չերնիշևսկուն թույլատրվեց ապրել հայրենի քաղաքում, Ֆեդոսյան եղբոր հետ օգնեց կապկըպելու և Սարատով ուղարկելու բոլոր իրերը, բայց նա չմեկնեց այնտեղ: Մայրը թույլ չտվեց: «Ես շատ շնորհակալ եմ Ֆեդոսյա Մելքումովնայից,— գրել է Չերնիշևսկին Աստրախանից կնոջը գրած վերջին նամակում.— նա շատ է ուզում ապրել քեզ հետ: Չեն թողնում» (նույն տեղը, էջ 884):

4.

Հիշատակենք Չերնիշևսկու՝ Աստրախանի հայկական գաղութին ու նրա առանձին ներկայացուցիչների վերաբերող մի քանի այլ նկատառումներ: Այդ մասին նա մանրամասն տեղեկացնում է կնոջը: «Մի քանի անգամ ես տեսնվել եմ Սուսաննա Բոգդանովնայի և նրա ամուսնու հետ... Նրանք մի տղա ունեն, հիմա նա 7 կամ 8 ամսական է— աչքերը կապույտ են, մազերը՝ շեկ, ինչպես հորը (հայրը ժիկահեր է), չնայած զտարյուն հայ է, ասում է, որ Մոզդոկում, որտեղ ինքը ծնվել է, հայերի մեջ շատ կան շիկահերներ» (նույն տեղը, էջ 654, 655): Բայց Աստրախանի իր բոլոր ծանոթ հայերից միայն մեկին էր Չերնիշևսկին կոչում իր «մտերիմը» (նույն տեղը, էջ 627), նույնիսկ «բարեկամը» (էջ 627): Ավետով Սերգեյ Ստեպանովիչն էր նա: Երբ վերջինս հիվանդացավ և գնաց Մոսկվա բուժվելու, Չերնիշևսկին գրեց Օլգա Սոկրատովնային. «Մտածում եմ ծանոթանալ մի մարդու հետ, որը նույնպիսի բարեկամ կլինի ինձ համար, ինչպիսին էր խեղճ Սերգեյ Ստեպանովիչը» (նույն տեղը, էջ 679):

Ի՞նչը կարող էր մտերմացնել Չերնիշևսկուն այդ հայ վաճառականի հետ: Համենայն դեպս ոչ ինչ-որ քաղաքական հետաքրքրությունների ընդհանրությունը: Նման ենթադրության համար բացարձակապես ոչ մի հիմք չկա: Այդ դեպքում ինչո՞վ բացատրել նրանց հաճախակի հանդիպումներն ու համատեղ զբոսանքները: Ահա, օրինակ, այսպիսի մի դեպք. այդ «բարեկամը» գնում է Չերնիշևսկու մոտ և «պահանջում», որ նա գնա իր հետ զբոսնելու. «Ես չէի ուզում: Նա սկսեց բարկանալ: Ոչինչ չէր մնում անելու, հագա վերարկուս, և մեկնեցինք» (նույն տեղը, էջ 577): Ինչի՞ արդյունք էր նրանց հարաբերությունների այդ պարզությունն ու ձևականությունից զերծ լինելը: Այդ բացատրելու համար դիմենք Չերնիշևսկու՝ նույն ժամանակաշրջանի մի քանի այլ նամակների: Դրանցից մեկում խոսվում է այն մասին, թե ինչպես պետք է գնահատել այս կամ այն հասարակական խավին պատկանող մարդկանց: Փորձեցեք, օրինակ, սոսկ չինովնիկների գործնական հարաբերությունների հիման վրա ճիշտ պատկերացում կազմել նրանց մասին: Դրա համար դուք պետք է իմանաք նրանց և այլ իրադրություններում, անձնական կյանքում, տանը, ընտանիքում: Այդ ժամանակ դուք կհամոզվեք, որ «կոպիտ», այսինքն՝ պաշտոնական, երբեմն ձևական գործունեությունն ամբողջովին չի ոչնչացնում մարդկայինը մարդկանց մեջ: Դրանով է բացատրվում այն, որ չինովնիկների մեջ կարելի է հանդիպել և այնպիսիների, որոնց «չի կարելի չհարգել ու չսիրել»:

Նույնը վերաբերում է և վաճառականությանը: Անշուշտ, վատ շատ բան կա և այս խավի մարդկանց շրջանում— հարբեցողություն, քեֆեր, ցոփ կյանք, հարստանալու տենչ և այլն: Բայց այստեղ ևս մենք չենք կարող սահմանափակվել միայն նրանով, որ վաճառականներին գիտենք սոսկ «որպես վաճառականներ, և ոչ որպես մարդիկ»: Պարսավելով նրանց մեջ եղած ողջ բացասականը՝ մենք, այնուամենայնիվ, պետք է հիշենք, որ «վաճառականը միայն վաճառական չէ, այլև մարդ», որ հաճախ նրա կոպիտ բարքի տակ թաքնվում են «բարի և ազնիվ զգացմունքներ» (նույն տեղը, էջ 748):

«Շատ անպետք մարդիկ կան վաճառականների շրջանում, որոնց ես ճանաչել եմ և այժմ էլ գիտեմ: Բայց նրանց մեջ շատ կան խելացի, բարի, ազնիվ մարդիկ» (նույն տեղը, էջ 727): Այդպիսի մարդկանց շարքին էր դասում Չերնիշևսկին իր «մերձավորագույն բարեկամին»՝ Ավետովին (նույն տեղը): Երբեմն Չերնիշևսկին խիստ առանձնացնում էր նրան մյուս վաճառականներից, դրանով իսկ հնարավորություն ընձեռելով մեզ՝ հասկանալու, թե ինչի վրա կարող էին հիմնվել նրա որոշ աստիճանի հասած բարեկամական հարաբերությունները այս հայի հետ:

Ավետովի հետ է կապված մեր մի այլ ենթադրություն ևս՝ հայոց լեզվին Չերնիշևսկու ծանոթ լինելը: Չերնիշևսկին մոլի բանասեր էր: Դեռ վաղ հասակից նրա մոտ նկատելի էր այդ: Հոր հետ նա ուսումնասիրել էր հին լեզուները՝ հունարենն ու լատիներենը: Հետագայում նա կատարելապես տիրապետել է անգլերենին, ֆրանսերենին, գերմաներենին: Նրա հայրենի քաղաքը՝ Սարատովը, գտնվում էր Հյուսիսի և Հարավի առևտրական ճամփամիջում. այստեղ նա մանկուց հանդիպել էր Արևելքի տարբեր ժողովուրդների մարդկանց, այստեղից էլ պարսկերեն ու թաթարերեն սովորելու նրա փորձերը: Եվ այժմ, ընկնելով հայկական միջավայր, այդ քննախույզ մարդը չէր կարող չհետաքրքրվել հայոց լեզվով: Այս գործում նրան կարող էր օգնել միայն Ավետովը. նրա հայկական շրջապատում չենք տեսնում մի այլ ավելի հարմար մարդ: Ավետովա



քույրերը Նիկոլայ Գավրիլովիչին հրավիրում են տեսնելու իրենց եղբոր հայերեն գրած նամակները Մոսկվայից, ուր նա բուժվում էր (նույն տեղը, էջ 712): Չերնիշևսկու սարատովյան տուն-թանգարանում պահպանվել է Վեբերի Ընդհանուր պատմության առաջին հատորը, որն Ավետովին է նվիրել Չերնիշևսկին՝ հայերեն ինքնագրով:

Գործն արագացնելու համար Չերնիշևսկին քարտուղարին թելադրում էր թարգմանությունները, երբեմն և սեփական ստեղծագործությունները: Այդպիսի փորձ նա ուներ դեռևս «Սովրեմեննիկում» աշխատելու ժամանակվանից. Աստրախանում նրա քարտուղարն էր Կոնստանտին Միխայլովիչ Ֆեոդորովը:

1888 թվականի հուլիսի 1-ին Չերնիշևսկու՝ կնոջը գրած նամակից իմանում ենք, որ Ֆեոդորովի հիվանդության ժամանակ նա «իրեն օգնելու է հրավիրել Անվրոսի Մարտինովիչին (հիշո՞ւմ ես հանրային գրադարանում ծառայող այն հային, որ աշխատում էր ինձ հետ երրորդ տարվա ամռանը». նույն տեղը, էջ 69): Այստեղ հիշատակված մարդու ռուսականացված անուն-ազգանունը թող չշփոթեցնի մեզ, խոսքն այստեղ, անշուշտ, հայի մասին է, ինչպես վկայում են Չերնիշևսկու՝ փակագծերի մեջ առնված բառերը:

Այսպիսով, շատ կարճ ժամանակով Չերնիշևսկու քարտուղարի դերն ստանձնել էր այդ հայ «պատանին» (նույն տեղը):

Ինչպես տեսանք, Աստրախանում Չերնիշևսկիների հայկական շրջապատը մեծ մասամբ բաղկացած էր հասարակ, սովորական մարդկանցից, գլխավորապես կանանցից, որոնք բարի և դրացիական հարաբերությունների մեջ էին մեծ հեղափոխականի կնոջ՝ Օլգա Սոկրատովնայի հետ: Նրանց գնալ-գալու ժամանակը որևէ ձևով չէր սահմանափակվում, նրանք այցելում էին Չերնիշևսկիներին, երբ իրենց պետք էր լինում կամ երբ տանտիրուհին էր հրավիրում նրանց կենցաղային որևէ գործով: Բնականաբար, Չերնիշևսկիների այս այցելուներն իրենց կրթությամբ ու հետաքրքրություններով հեռու էին քաղաքականությունից:

Չերնիշևսկին, որ միշտ նրբազգաց, ուշադիր էր կնոջ նկատմամբ, նույնպիսի վերաբերմունք էր տածում և նրա հյուրերի հանդեպ. Օլգա Սոկրատովնայի հետ կամ նրա հանձնարարությամբ գնում էր նրանց մոտ, մի խոսքով, տվյալ դեպքում պահպանում էր վարվելակարգի բոլոր ձևերը— նրանց այցելություններին պատասխանում էր այցելությամբ:

Մի փոքր այլ կերպ գնելով այդ հարաբերությունները՝ մեր կարծիքով, կարելի է ասել, որ Չերնիշևսկիների և տեղական հայկական գաղութի այդ հասարակ, բարի մարդկանց փոխայցելությունները որոշ չափով թեթևացնում էին մեծ հեղափոխականի ընտանիքի վիճակը: Չէ՛ որ այն հսկողության տակ էր, մեկուսացված և կասկածելի: Այս առումով այդպիսի արարքը և՛ «խիզախ» էր, և՛ «ազնիվ»:

Այսօր մենք չենք կարող շնորհակալությամբ չհիշել այդ հայ մայրերին, կանանց ու քույրերին այն բանի համար, որ նրանք բարի հետք են թողել Ռուսաստանի մեծագույն մարդկանցից մեկի հիշողության մեջ:

Մոսկվա

## Р Е З Ю М Е

Известно, что Н. Г. Чернышевский после двадцатилетней каторги и ссылки с октября 1883 г. по июнь 1889 г. жил в Астрахани, где была большая армянская колония.

Николай Гаврилович долгое время проживал среди армян, с которыми его связывала тесная дружба. Об этом ярко свидетельствует автограф Н. Г. Чернышевского на армянском языке, на книге Г. Вебера «Всеобщая история». Его дружеские отношения с Д. И. Мелкумовым, очевидно, не лишены идейной общности.

# ԳԻՏԱԿԱՆ ՊՐՊՏՈՒՄՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐԸ

ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ Ռուսաստանին միացնելու պատմության և նրա առաջադիմական նշանակության մասին բազում ուսումնասիրություններ ու փաստաթղթերի ժողովածուներ են լույս տեսել, որտեղ շոշափվել են նաև հայ ժողովրդի ազգային համահավաքի, բնակչության աճի և տեղափոխությունների հարցերը: Սակայն 1828 թ. հետո Արևելյան Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ֆոնի վրա բնակչության վերարտադրության, զբաղվածության և տեղաշարժերի հարցերը իրենց ամբողջության մեջ, մինչև վերջերս սպասում էին իրենց հետազոտողին: Այս առումով պրոֆեսոր Վ. Խոջաբեկյանի նոր աշխատությունը* այդ պրոբլեմի բազմակողմանի քննարկման առաջին փորձն է, որն ընդգրկում է հայ ժողովրդի պատմության 150-ամյա ժամանակաշրջանը:

Եղած գրականության քննական ուսումնասիրման, արխիվային ու վիճակագրական նոր նյութերի մշակման ու համեմատական վերլուծության միջոցով հեղինակը կատարել է նոր ընդհանրացումներ, պրոբլեմը լուսաբանող նոր եզրահանգումներ: Ուշագրավն այն է, որ թեև աշխատությունն ընդգրկում է ուսումնասիրության երկար ժամանակահատված՝ մեկ ու կես դար, բայց շարադրանքի պատմական հաջորդականությունը ուղեկցվում է յուրաքանչյուր ավյալ ժամանակահատվածում քննարկվող հարցերի պրոբլեմատիկ խորության և յուրօրինակ լուծումների հետ: Ժողովրդագրական զարգացման խնդիրները հմտորեն շարադրվում են տնտեսության պատմական զարգացման օրինաչափությունների բացահայտման հիման վրա, մեկնաբանվում նրա հետ ունեցած փոխադարձ սերտ կապի մեջ:

Աշխատության ներածության մեջ հեղինակը հանգամանորեն անդրադարձել է թեմային վերաբերող գրականությանը, ցույց տվել եղած աշխատությունների բարերար ազդեցությունը պրոբլեմի ուսումնասիրության վրա և այն հարցերն ու խնդիրները, որոնք սխալ կամ թերի են լուսաբանվել կամ էլ լիովին դուրս են մնացել հետազոտողների ուշադրությունից: Ցանկալի կլիներ ներածականում տրվեր նաև աղբյուրների ու վիճակագրական նյութերի տեսություն:

Գրախոսվող աշխատության առաջին բաժինը նվիրված է նախասովետական Հայաստանի բնակչության վերարտադրության, տեղաշարժերի, զբաղմունքի բնույթի հարցերին, որոնք պատմատնտեսագիտական գրականության մեջ առաջին անգամ են քննարկվում: 1828 թ. Թուրքմենչայի պայմանագրով Արևելյան Հայաստանը՝ հիմնականում Երևանի և Նախիջևանի խանությունները, միացվեցին Ռուսաստանին: Դա բախտորոշ շրջադարձ էր հայ ժողովրդի դարավոր պատմության մեջ: Սակայն, ինչպես հայտնի է, Արևելյան Հայաստանի մի մասը Ռուսաստանին էր միացվել մինչ այդ: Փաստորեն Թուրքմենչայի պայմանագրով ավարտվում է Արևելյան Հայաստանի ազատագրումը:

Աշխատության այս բաժնում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվել Արևմտյան Հայաստանից Արևելյան՝ բնակչության արտագաղթի կազմակերպմանը, որը հայ բնակչության համախմբման կարևոր ազդակ հանդիսացավ: Ռուսաստանի հովանու տակ մտած Արևելյան Հայաստանը անցյալ դարի սկզբներից բռնեց տնտեսական և կուլտուրական զարգացման ուղին և դարձավ Պարսկաստանի ու Արևմտյան Հայաստանի տարբեր գավառներից ձգվող քարավանների հանգրվանը, հայազգի բնակչության համահավաք կենտրոնը և վճռական դեր խաղաց նրա ճակատագրում: Չնայած պարսկական իշխանությունների հարուցած բազում դժվարություններին, հայ առաջադեմ գործիչների անդուլ ջանքերով և Ռուսաստանի օգնությամբ, կարճ ժամկետում Պարսկաստանի տարբեր գավառներից արտագաղթած 45—50 հազար հայերից ավելի քան 35,5 հազար մարդ ապաստանեցին հայկական մարզում: Այստեղ պարզորոշ շեշտվում է, որ Ռուսաստանը նույնպես շահագրգռված էր Արե-

* Վ. Ե. Խոջաբեկյան, Հայաստանի բնակչությունը և նրա զբաղվածությունը, Երևան, ԳԱ Հրատ., 1979, 394 էջ։



վելյան Հայաստանի ամայացած գյուղերը հա-
յերով բնակեցնելու հարցում, որոնք վաղուց ա-
պացուցել էին իրենց նվիրվածությունը ռուսա-
կան պետությանը: Հեղինակը իրավացիորեն
նկատում է, որ չնայած իր վարած գաղութային
քաղաքականությանը, տնտեսապես խրախու-
սելով հայերի համահավաքը, Ռուսաստանը
օբյեկտիվորեն նպաստում էր հայ ժողովրդի
հետագա համախմբմանը: Արևելյան Հայաս-
տանը ապաստան եղավ նաև Թուրքիայի տի-
րապետության տակ տառապող հայության հա-
մար: 1829 թ. Ռուսաստանի և Թուրքիայի միջև
կնքված Ադրիանապոլսի դաշնագրով Ռուսաս-
տանին միացվեցին նաև Ախալցխան և Ախալ-
քալակը, որտեղ զգալի թվով հայեր էին բնակ-
վում: Բացի դրանից, դաշնագրով թույլատրը-
վում էր նաև, որպեսզի Թուրքիայում բնակ-
վող հայերը, որոնք օգնել էին ռուսական բա-
նակին, հետագա հաշվեհարդարից խուսափե-
լու համար արտագաղթեն Արևելյան Հայաս-
տան: Այդ նպատակով հիմնվեց հատուկ կոմի-
տե, որը պետք է զբաղվեր գաղթականների
փոխադրման, բնակեցման և խնամակալության
հարցերով: Թուրքիայից արտագաղթող հայերը
նույնպես արտոնություններ և օգնություն էին
ստանում տեղական իշխանություններից: Արև-
մտյան Հայաստանից 1829—1830 թթ. արտա-
գաղթեց 95 հազար հայ բնակչություն, որի
մի զգալի մասը բնակվեց Արևելյան Հայաս-
տանում: Նրանց որոշ մասը բնակություն հաս-
տատեց Սև ծովի ափերին, Կովկասի և Ռու-
սաստանի այլ վայրերում: Մասսայական ներ-
գաղթի շնորհիվ Արևելյան Հայաստանում աս-
տիճանաբար բարձրացավ հայկական բնակչու-
թյան տեսակարար կշիռը:

Աշխատության մեջ ուշագրավ տվյալներ են
բերվում Արևմտյան Հայաստանից 1877—78 և
1894—96 թթ. հայերի մասսայական արտա-
գաղթի մասին, որոնց քարավանները դեգե-
րում էին Անդրկովկասի և Ռուսաստանի հայա-
շատ վայրերում: Գոյության միջոցներից զուրկ
այդ գաղթականներին որոշ չափով օգնություն
ցույց տալու համար կյանքի կոչվեցին բարե-
գործական ընկերությունները: Գրախոսվող աշ-
խատությունում հանգամանորեն քննարկվում են
Պարսկաստանից ու Թուրքիայից դեպի Արևել-
յան Հայաստան գաղթած հայ բնակչության
տեղաբաշխման և նրա հետագա ճակատագրի
հարցերը: Հայ ժողովրդի ճակատագրում Ռու-
սաստանի խաղացած վիթխարի դերը բացա-
հայտելու հետ մեկտեղ, հեղինակի գրչից չի
վրիպել Անդրկովկասի, այդ թվում Արևելյան
Հայաստանի գաղութաբնակեցման մեկնաբա-
նությունը:

Անդրկովկասը Ռուսաստանին վերջնակա-
նապես միավորվելուց հետո ցարիզմը որոշակի
միջոցներ է ձեռնարկում նաև այն ռուս գյու-
ղացիներով բնակեցնելու համար: Դա ցարիզմի
գաղութային քաղաքականության արտահայ-
տությունն էր, որով միաժամանակ ձգտում էր
իր հարավային սահմանների պաշտպանու-
թյունը միայն տեղական բնակչության հույսին
չթողնել: Չնայած ամուսնացող և տեղում բնա-
կություն հաստատող զինվորականներին բա-
զում արտոնություններ էին տրվում, ռուս
զինվորներով երկրամասը բնակեցնելու ծրագի-
րը էական արդյունքներ չտվեց: Ուստի նպա-
տակահարմար գտնվեց Անդրկովկաս արտաք-
սել ռուս աղանդավորներին: Դրանով ցարիզ-
մը ձգտում էր նախ Անդրկովկասը բնակեց-
նել ռուսներով, իր համար հենարան ստեղծե-
լով այնտեղ, և մյուս կողմից կենտրոնական
Ռուսաստանը մաքրել «հերետիկոսներից»:

Պարսկաստանից և Թուրքիայից դեպի Արե-
վելյան Հայաստան բնակչության արտագաղթի
մանրակրկիտ ուսումնասիրությունից բացի,
այստեղ ցույց է տրված բնակչության 1828—
1914 թթ. բնական աճի և ներքին տեղաշար-
ժերի դինամիկան: Նշելով մեխանիկական և
բնական աճի շնորհիվ Արևելյան Հայաս-
տանի բնակչության արագ ավելացումը, հե-
ղինակն իրավացիորեն եզրակացնում է, որ
եթե նախկին շրջանում թուրք ու պարսիկ տի-
րապետողները բոլոր միջոցներով ձգտում էին
Հայաստանը դատարկել հայերից և այնտեղ
վերաբնակեցնել այլազգիներով, ապա Ռու-
սաստանին միանալուց հետո անընդհատ աճող
հայկական բնակչությունը մեծամասնություն
կազմեց, հասնելով ընդհանուրի 56,7 տոկոսին:
Միայն 1827—1913 թթ. հայ բնակչությունն ա-
վելացավ 22 անգամ:

Կապիտալիզմի զարգացումը վճռական դեր
խաղաց նաև տարբեր ժողովուրդների տեղա-
շարժերի ինտենսիվացման ու տեղաբաշխման
հարցում: Ռուսաստանում և Անդրկովկասում
արագ աճող արդյունաբերական կենտրոնները
դեպի իրենց էին ձգում գոյության միջոցներից
զուրկ կամ սակավազոր գյուղացիներին: Մաս-
սայական արտագնացության հետևանքով հայ
բնակչությունը Անդրկովկասում սկսեց ավելի
արագ աճել, քան բուն Հայաստանում: Սա այն
հիմքն էր, որի վրա ձևավորվեցին հայկական
բուրժուազիան ու պրոլետարիատը: Գրքում
բազում ուշագրավ տվյալներ են բերվում Ան-
դրկովկասում կապիտալիզմի զարգացման ա-
ռանձնահատկությունների, հայկական բուր-
ժուազիայի ակտիվացման և ընչազուրկ գյուղա-
ցիության մասսայական արտագնացության
մասին:

Աշխատության մեջ հարուստ տվյալներ են
բերվում նաև այն գաղթականների մասին, ո-
րոնք բնակություն էին հաստատել Կովկասի և

Արտադրության արդյունավետության բարձրացման և որակի բարելավման նպատակով կուսակցության առաջադրած խնդիրների իրականացումը պահանջում է արագացնել տընտեսական մեխանիզմի վերակառուցումը՝ պլանավորման կատարելագործումը, տնտեսական խթանների և լծակների առավել հմուտ օգտագործումը, կառավարման կազմակերպական կառուցվածքի բարելավումը։ Մինչդեռ տընտհաշվարկի կիրառման հարցում դեռևս իսպառ վերացված չեն ձևականության տարրերը։ Ոչ բոլոր միավորումներում ու ձեռնարկություններում է լիովին դրսևորվում աշխատողների և ամբողջ կոլեկտիվի ստեղծագործական նախաձեռնությունը, շատ կոլեկտիվներում լրիվ արդյունավետությամբ չի գործում նյութական խթանման համակարգը։

Տնտհաշվարկը լայն հնարավորություն է ընձեռում խորապես վերլուծելու տնտեսական գործունեությունը, պարզելու աշխատանքային հաջողությունների կամ անհաջողությունների պատճառները և դրանով իսկ նպաստում է ինչպես նորի, առաջավորի տարածմանը, այնպես էլ նկատված թերությունների վերացմանը, անտնտեսվարությունը, անարտադրողական ծախսերն ու կորուստները կանխելուն։ Այն նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների նկատմամբ պետական վերաբերմունքը դաստիարակելու կարևոր միջոց է։

Արմատավորել և կատարելագործել տընտհաշվարկը՝ նշանակում է մշտապես որոնել և գտնել արդյունավետության և որակի աճի, յուրաքանչյուր աշխատավորի, ողջ կոլեկտիվի նյութական և բարոյական շահագրգռվածության հիման վրա սեփական աշխատանքը բարելավելու ռեզերվներ։ Այս առումով գրախոսվող մենագրությունը, անշուշտ, օգտակար կլինի տնտեսավարների և տնտեսագետների, պլանային մարմինների, ինչպես նաև բուհերի դասախոսների և ուսանողների համար։

**Ս. Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ**






Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ։** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64։

*ՎՖ 03884 Պատվեր 1472 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ՝ 15.832 Գինը՝ 20 կոպ.։*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 7/VII 1980 թ.*

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, **Ավ. Իսահակյան փող. № 28։**


## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու։ *Հ. 25։ «Հայաստան» հրատ., 1980։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու։ *Հ. 26։ «Հայաստան» հրատ., 1980։*

ՅՈՒ. ԲԵՐՆՈՎ, Գ. ՉԵՐՆԵՅԿՈ— Բուլղարիայի ժողովրդական Հանրապետություն։ *«Հայաստան» հրատ., 1980։*

Գիտական կոմունիզմ։ *Սեմինար պարապմունքների ուսումնամեթոդական ձեռնարկ։ ԵՊՀ հրատ., 1980։*

Դավիթ Անհաղթ։ *Հոդվածների ժողովածու։ ԵՊՀ հրատ., 1980։*

Ռ. ՍԱՐԻՆՅԱՆ— Ալեքսիս Արասխանյան։ *(Տնտեսագիտական հայացքների վերլուծություն)։ «Հայաստան» հրատ., 1980։*

Շեքսպիրական։ *Գիրք 6։ Հովհաննես Մասեհյան։ Ե., ԳԱ հրատ., 1980։*

Ս. ԿԻՐԻԿԵՍԿԻ— Հայաստանի և հայ կուլտուրայի մասին։ *Բանաստեղծություններ, վեպ, հոդվածներ, նամակներ։ Ե., «Սովետական գրող», 1980։*

Կ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— 51-րդ գվարդիական դիվիզիայի մարտական ուղին *(համառոտ ակնարկ)։ Ե., ԳԱ հրատ., 1980։*

Դաստիարակչական աշխատանքը դպրոցում։ *Փաստաթղթերի ժողովածու։ Ե., «Լույս» հրատ., 1980։*

Տ. ԽԼՈՅԱՆ— Ուսուցիչը և նրա գործունեության հոգեբանական առանձնահատկությունները։ *Ե., «Լույս» հրատ., 1980։*

Ռ. ՇԱՆԴՈՐ— «Դորա» ծածկանունով։ *Սովետական հետախույզի հիշողությունները։ «Հայաստան» հրատ., 1980։*

В. И. ЛЕНИН. — **Вопросы строительства социализма и коммунизма.** Изд. 2-ое, доп. М., Политиздат, 1980.

**В. И. Ленин, КПСС о работе партийного и государственного аппарата.** Изд. 2-е, доп. М., Политиздат, 1980.

**В. И. Ленин, КПСС о научной организации труда.** Сборник, М., Политиздат, 1980.

М. ГОРЬКИЙ. — **В. И. Ленин.** М., Политиздат, 1980.

Ю. ЮРОВ. — **Путешествие по ленинской адресной книжке.** Изд. 3, перераб. и доп. М., Политиздат, 1980.

В. КУЛИКОВ. — **Надежный оплот мира и безопасности народов.** К 25-летию организации Варшавского Договора. М., «Знание», 1980.

Ю. ПЕКШЕВ. — **Долгосрочные целевые программы сотрудничества стран—членов СЭВ.** М., «Наука», 1980.

М. МЧЕДЛОВ. — **Социализм—становление нового типа цивилизации.** М., Политиздат, 1980.

**Развитой социализм: общее и специфическое в его строительстве.** Коллективная монография. М., «Наука», 1980.

**Пролетарский интернационализм—мощное оружие революционного преобразования мира.** М., «Мысль», 1980.

С. КОВАЛЕВ. — **Формирование социалистической личности.** М., «Мысль», 1980.

К. ЗАРОДОВ. — **Экономика и политика в революции.** М., «Мысль», 1980.

**Общий кризис капитализма.** Движущие силы и формы проявления в современных условиях. Пер. с нем., М., Политиздат, 1980.

А. КУДРИН. — **Логика и истина.** Философская библиотечка для юношества. М., Политиздат, 1980.

Р. УЛЬЯНОВСКИЙ. — **Политические портреты борцов за национальную независимость.** М., Политиздат, 1980.

**Массовая информация в советском промышленном городе.** Опыт комплексного социологического исследования. М., Политиздат, 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊՏՂԱՀՅՈՒԹՆ ՕԳՏԱԿԱՐ Է

*Հանրահայտ ճշմարտություն է այս, սակայն քչերը գիտեն, որ վարունգի, շաղգամի, ամսական բողկի հյութերը նաև հիանալի բուժամիջոցներ են: Դրանք պարունակում են դյուրամարս ածխաջրեր, օրգանական թթուներ և հանքային նյութեր, որոնք օգտակար են խրոնիկական գաստրիտի և գիրության դեպքում (թոթափման օրերին քաշը պակասում է 0,6-ից մինչև 1 կգ, իսկ բուժման ամբողջ կուրսի ընթացքում՝ մինչև 10 կգ): Բնական հյութերի բուժիչ հատկություններն ապացուցված են բժշկական լուրջ հետազոտություններով, իսկ համն արժանացել է համտեսողների հավանությանը: Դրանց արտադրության տեխնոլոգիան մշակված է, թողարկման պլանը՝ հաստատված: Պատրաստման եղանակը նույնն է, ինչ սովորական հյութերինը— լվացում, մաքրում, մանրացում, ճզմում և թորում: Միայն բանկաները լցնելիս անհրաժեշտ է հեռացնել դրանց միջից օդը, որովհետև այն իջեցնում է մթերքի դիմացկունությունը: Վիտամինները հատկապես երկար են պահպանվում, երբ վակուումացված բանկաներում ավելացվում են իներտ գազեր:*

## ՍԱԼԻԿՆԵՐ՝ ԱՐԵՎԱԾԱՂԿԻ ԿՈՂՐԵՐԻՑ

*Արևածաղկի բերքահավաքից հետո դաշտում մնում են կարծր կողրեր, որոնք որպես կեր պիտանի չեն: Դրանք վառում կամ վարում են հողի հետ, ուր բավական երկար ժամանակ չեն քայքայվում: Նման հումքի ռացիոնալ օգտագործման մեթոդ են առաջարկել Սոֆիայի ուսանողները, որի համար նրանք արժանացել են ոսկե մեդալի: Ըստ այդ մեթոդի, կողրերը մանրացվում են, մամլվում տափակ կաղապարի մեջ և վրան լցվում է պոլիմերային խեժ: Ստացվում են թեթև, ամուր և էժան սալիկներ: Եթե դրան ավելացվում են արևածաղկի կորիզի կեղևները, ապա սալիկները ձեռք են բերում ինքնատիպ դեկորատիվ հատկություններ, որպիսիք բարձր են գնահատում կահույքագործները:*

## ԼՐԱԳՐԵՐ՝ ԼՐԱԳՐԵՐԻՑ

*Շվեդական Հալստավիկ քաղաքի «Հոլմենս-Բրուկ» ֆաբրիկայում գործում է ագրեգատ, որը թողարկում է լրագրային թուղթ. հումքի 20 տոկոսը կազմված է մակուլատուրային զանգվածից: Ջանում են ավելացնել այդ զանգվածի քանակը նախ երկու, ապա՝ երեք անգամ: Մանրացված հին լրագրերից տպագրական ներկերը հեռացվում են ջրածնի գերօքսիդից՝ հեղուկ ապակուց և ճարպաթթուներից կազմված բաղադրությունների միջոցով: Մաքրման պրոցեսը կատարում են ֆլոտացիոն մեքենաները: Այնուհետև մնացորդն այրվում է ֆաբրիկայի հնոցներում:*

## ԳՈՐԾՎԱԾՔ՝ ՆԱԽԱՊԵՍ ՏՐՎԱԾ ՀԱՏԿՈՒԹՅԱՄԲ

*Լենինգրադի մանածագործ-գիտնականների մի խումբ, գիտությունների վաստակավոր գործիչ, պրոֆեսոր Ա. Մեոսի ղեկավարությամբ, աշխարհում առաջին անգամ ստացել է կենսաբանորեն ակտիվ արհեստական մանրաթել: Այդ մանրաթելից կարելի է ստանալ գործվածք՝ նախապես տրված կոնկրետ հատկություններով, օրինակ՝ հակամանրէական, անզգայացուցիչ:*

*Վերջերս «Լիցենզինտորգ» միավորումն ստացել է նոր մանրաթելի և դրանից պատրաստված զտիչ նյութերի արտադրության տեխնոլոգիան: Այդ մանրաթելերը կարող են օդը մաքրել քլորից, ֆտորից, ծծմբաջրածնից և թունավոր այլ գազերից: Նման մանրաթելերից պատրաստված գործվածքային և ոչ գործվածքային նյութերը կարելի է կիրառել ո՛չ միայն օդափոխիչ զտիչներում և ունիվերսալ շնչադիմակներում. դրանք օգտագործվում են գազ արտածող սարքերը ծածկելու և մետաղները իրենց աղալուծույթներից անջատելու համար:*